

ԱՊՐԻԼ
№ 4
1953 Թ.

# ՊԻՈՆԵՐ



# Լենինի հրապարակում

ՀԵՆՐԻԿ ԹՈՒՄԱՆՅԱՆ

Նկ. Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ

Լենինի անվան հրապարակով
Անցնում է շարքը պիոներական.
Քայլերով հաստատ, սրտաբուխ երգով,
Ջինջ հայացքներում մեր պայծառ ներկան:

Քայլում են նրանք և արձանի մոտ
Կանգ առնում մի պահ հարգանքով խորին,
Եվ արտերի մեջ մի անհուն կարոտ
Նայում հարազատ ու մեծ Լենինին:

Ամեն մեկն իր մեջ խորհում է մենակ —
Պատգամն Իլյիչի լա՞վ է կատարում,
Գիտելիքներով զինվում շարունակ.
Չէ՞ որ Լենինը դա շատ էր սիրում:

Սիրում էր կյանքը՝ մանկան պես վճիտ,
Սիրում էր խոսքը ազնիվ ու շիտակ…
Եվ ամեն մի սուրբ պատգամն Իլյիչի
Բոցավառվում է նրանց կրծքի տակ:

Խորհում են այդպես, նայում հմայված,
Կարմիր վզկապի ցոլքը դեմքերին,
Եվ կարծես նրանց մտքերին ձուլված
Լսվում է ձայնը ջոկատավարի.—

— Նայե՛ք, այս մասում հրապարակի
Կկանգնի շուտով վիթխարի մի շենք
Նույնքան գեղեցիկ. և մեր քաղաքին
Կտա նոր հմայք, կտա նոր մի տեսք:

Իսկ այս անկյունում… և նա մի առ մի
Պատմում է սիրով ու ոգևորված,
Թե ինչ է այնտեղ կառուցվում հիմի
Եվ ինչ շենքեր կան դեռ նախագծված:

Լսում են նրանք, և հիացմունքի
Վեհ զգացումն է նրանց համակում,
Մտքով թռչում են, տեսնում քաղաքի
Մոտիկ ապագան և կրկին երդվում.

Երդվում Լենինի արձանի առաջ —
Կյանքում անդադար, անվերջ սովորել,
Մեծ Լենինի պես լինել աննահանջ,
Ստալինի նման անխոնջ պայքարել…

Լենինի անվան հրապարակով
Անցնում է շարքը պիոներական,
Քայլերով հաստատ, սրտաբուխ երգով
Գնում են դեպի չքնաղ ապագան:






Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ

№ 4

**ԱՊՐԻԼ**

1953 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 25-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ „ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

«ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՆԵՐԸ»; Գործ նկարիչ Ե. Ա. ԿԻԲՐԻԿԻ;

# ԻԼՅԻՉԻ ՄԱՆԿԱԿԱՆ ՈՒ ԴՊՐՈՑԱԿԱՆ ՏԱՐԻՆԵՐԸ

(Հատվածներ)

*Ա. Ի. ՈՒԼՅԱՆՈՎԱ*

*...Վոլոդյան շատ կայտառ ու չարաճճի երեխա էր, բայց նրա լավ կողմը ճշմարտասիրությունն էր. երբ չարություն էր անում, միշտ խոստովանում էր։ Օրինակ՝ հինգ տարեկան հասակում մի անգամ կոտրեց մեր մեծ քրոջ կես արշինանոց քանոնը, որը բաժանված էր վերշոկների և կես վերշոկների[1]։ Այդ քանոնը նա հենց նոր էր նվեր ստացել։ Ինքը, Վոլոդյան, կոտրված քանոնը ձեռքին, վազեց քրոջ մոտ ասելու, որ կոտրել է։ Իսկ երբ քույրը հարցրեց, թե այդ ինչպես պատահեց, նա պատասխանեց. «Ծընկովս կոտրեցի» և ոտը բարձրացնելով, ցույց տըվեց, թե ինչպես է պատահել։*

*— Լավ է, որ նա ոչ մի բան գաղտուկ չի անում,— ասում էր մայրիկը։*

*Ասենք, մի անգամ մայրիկը պատմեց, որ այդ մեղքն էլ է պատահել։ Մայրիկը խոհանոցում կարկանդակի համար խնձոր մաքրելիս է եղել։ Սեղանին եղել է խնձորի կեղևի մի կույտ։ Վոլոդյան նրա մոտ պտույտ-պտույտ անելով, խնդրել է կեղև տալ իրեն։ Մայրիկն ասել է, որ կեղևը չեն ուտի։ Այդ ժամանակ ինչ-որ մեկը մայրիկի ուշադրությունը գրավել է, և երբ նա շուռ է եկել իր աշխատանքին, Վոլոդյան արդեն խոհանոցում չի եղել։ Մայրիկը նայել է պատուհանից և տեսել, որ Վոլոդյան այգում նստած է, իսկ նրա առաջ, փոքրիկ սեղանին, խնձորի կեղևի մի կույտ կա, որը Վոլոդյան արագ-արագ ուտում է։ Երբ մայրիկը նախատել է նրան, նա լաց է եղել և ասել, որ այլևս այդպիսի բան չի անի։*

*— Եվ իսկապես,— ասում է մայրիկը,— դրանից հետո նա երբեք ոչ մի բան գաղտնի չէր վերցնում։*

*[1] Այն ժամանակվա երկարության չափ։*



Վ. Ի. Լենինը Կազանի համալսարան ընդունվելու նախօրյակին։

*Նկ. Ռ. ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆԻ*

*Երբ Վոլոդյան ութ տարեկան էր, մի անգամ նա իր մի մեղքը թաքցրեց։ Հայրիկը մեծ երեխաների հետ նրան առաջին անգամ Կազան էր տարել, որպեսզի այնտեղից գնան Կոկուշկինո գյուղը՝ մորաքրոջ մոտ։ Կազանում, մորաքրոջ տանը, իր եղբայրների ու քույրերի և մորաքրոջ երեխաների հետ խաղալիս ու վազվզելիս, հանկարծ դիպավ փոքրիկ սեղանին, որի վըրայից ապակե ջրամանը ցած ընկավ և փշուր-փշուր եղավ։ Սենյակ մտավ մորաքույրը։*

*— Ո՞վ կոտրեց, երեխանե՛ր,— հարցրեց նա։*

*— Ես չեմ, ես չեմ,— ասացին բոլորը։*

*— Ես չեմ,— ասաց նաև Վոլոդյան։*

*Նա վախեցավ ուրիշի տանը, դեռևս քիչ ծանոթ մորաքրոջը խոստովանել իր արածը։ Նա մեր մեջ ամենափոքրն էր և նրա համար դժվար էր ասել «ես», քանի որ մյուսներն ասում էին «ես չեմ»։ Այդպիսով, դուրս եկավ, որ ջրամանն ինքն իրեն է կոտրվել։ Անցավ երկու-երեք ամիս։ Վոլոդյան վաղուց էր արդեն գնացել Կոկուշկինոյից և էլի ապրում էր Սիմբիրսկում։ Եվ ահա, մի անգամ երեկոյան, երբ երեխաները պառկել էին քնելու և մայրը շրջելով նրանց մահճակալների մոտ, մոտեցավ նաև Վոլոդյայի մահճակալին, հանկարծ Վոլոդյան սկսեց լալ։*

*— Ես մորաքույր Անյային խաբեցի,— ասաց նա հեկեկալով,— ես ասացի, թե ես չեմ կոտրել ջրամանը, բայց ես էի կոտրել այն։*

*Մայրիկը հանգստացրեց նրան, ասելով, որ ինքը նամակ կգրի մորաքույր Անյային և նա, երևի, կների։*

*Իսկ Վոլոդյան դրանով ցույց տվեց, որ սուտն ատելի է իր համար, որ, թեև ինքը,*

ուրիշի տանը, խոստովանելուց վախենալով խաբել է, բայց չի կարողացել հանգստանալ, մինչև չխոստովանի։

⁂

...Փոքրիկ Վոլոդյան սիրում էր թռչնիկներ որսալ, ընկերների հետ թակարդներ էր սարքում, իսկ դրանից էլ ավելի առաջ սիրում էր թռչնիկներ գնել, որպեսզի արձակի նրանց։ Հին ժամանակ սովորություն կար թռչնիկներին արձակել ավետման տոնին՝ մարտի 25-ին։ Վոլոդյան սիրում էր այդ սովորությունը և մայրիկից փող էր խնդրում, որ թռչնիկներ գնի ու բաց թողնի։ Հիշում եմ, մի անգամ նրա վանդակում մի շիկահավ կար։ Չգիտեմ՝ ի՞նքն էր բռնել, գնե՞լ էր, թե՞ որևէ մեկը նվիրել էր։ Հիշում եմ միայն, որ շիկահավը երկար չապրեց, սկսեց տխրել, փետուրները ցցեց ու սատկեց։ Լավ չգիտեմ, թե ինչու այդպես եղավ, Վոլոդյա՞ն էր մեղավոր, որ մոռանում էր թռչնիկին կերակրել, թե՞ ոչ։

Հիշում եմ միայն, որ մեկը դրա համար նախատում էր նրան, հիշում եմ այն լուրջ, կենտրոնացած արտահայտությունը, որով նա նայում էր սատկած շիկահավին, իսկ հետո վճռականապես ասաց. «Այլևս երբեք վանդակում թռչուն չեմ պահելու»։

Եվ իրոք. դրանից հետո նա թռչուն չէր պահում։

Նա կարթով ձուկ որսալու էլ էր վազում Սիմբիրսկի Սվիյագա գետը։ Նրա ընկերներից մեկը պատմում է հետևյալ դեպքը։ Երեխաներից մեկը նրանց առաջարկել է ձուկ որսալ մոտիկում գտնվող մեծ, ջրով լիքը ջրանցքում, ասելով, թե այնտեղ ծածաններ լավ են բռնվում։ Նրանք գնացել են, սակայն ջրի վրա կռանալով Վոլոդյան ընկել է ջրանցքը, որի տղմոտ հատակն սկսել է ներս քաշել նրան։

— «Չգիտեմ, թե ինչ կպատահեր,— պատմում է այդ ընկերը,— եթե մեր աղաղակի վրա այդտեղ չվազեր գետափին գտնվող գործարանի մի բանվոր և դուրս չքաշեր Վոլոդյային։ Դրանից հետո մեզ թույլ չտվին Սվիյագա գնալ»։

Սակայն, մանուկ հասակում ձուկ ու թռչուններ որսալով, Վոլոդյան մոլի չդարձավ այդ զբաղմունքներին և գիմնազիայի բարձր դասարաններում եղած ժամանակ, նա ո՛չ ձուկ էր որսում, ո՛չ էլ թռչունների թակարդ էր լարում։ Սովորաբար նա նավակ էլ չէր նստում Սաշայի հետ, երբ վերջինս ամառվա ամիսներին համալսարանից տուն էր գալիս. փոքրիկ եղբայրս, Միտյան էր սիրում



Ուլյանովների ընտանիքը։

ուղեկցել Սաշային, երբ նա Սվիյագա գետով դես ու դեն էր գնում՝ զանազան ճիճուներ ու ջրային այլ կենդանիներ որոնելու։ Սաշան բնական գիտություններով էր զբաղվում դեռ գիմնազիայի աշակերտ եղած ժամանակ, իսկ համալսարանում նա մտավ բնագիտական ֆակուլտետը և ամառները հետազոտություններով էր զբաղվում, իր գրվածքների համար նյութեր էր պատրաստում։




Վ. ՍՈԲԿՈ
(Ստալինյան մրցանակի լաուրեատ)

(Հատված «Սիրտը» վիպակից)

Նկ. ՀՈՎՀ. ՇԱՎԱՐՇԻ

Գեներալ Կոնվեյը մոտեցավ լուսամուտին և քար կտրեց անսպասելի տեսարանից. լուսամուտի տակ հավաքված էին երկու հարյուրից ավելի կանայք։ Նրանց դեմքերը սարսափ ու տանջանք էին արտահայտում։ Նրանց գլխավերևում ծածանվող երկու դրոշակներն ասես ճչում էին.

— Հա՛ց ենք ուզում։ Հա՛ց ենք ուզում։

— Ցրե՛լ անմիջապես,— ասաց գեներալը։ Օ՜, նա շատ լավ էր կարողանում կռվել անպաշտպան կանանց դեմ։

Գեներալը կանգնած էր լուսամուտի առաջ և դիտում էր, թե ինչպես է կատարվում իր հրամանը։ Հայտնվեցին ինչ-որ բարձրահասակ, ղոչաղ տղաներ, որոնք հատկապես ընտրված էին ռազմական ոստիկանության համար, և սկսեցին ռետինե ծանր մահակներով հարվածել աջ ու ձախ։ Լսվեցին ականջ ծակող ճիչեր։ Օրորվեց ու ընկավ դրոշակներից մեկը, ապա և մյուսը։ Ոստիկանները ճեղքելով մտան բազմության մեջ, որը սկսեց կամաց-կամաց ցրվել։

— Ապրեք, տղանե՛ր,— ասաց գեներալը, երբ հրապարակն արդեն մաքրված էր։

Գեներալի առանձնասենյակը մտավ սովետական լեյտենանտ Կորոլյովը, որը հատուկ հանձնարարությամբ գործուղված էր ամերիկյան շտաբը։ Նա լուսամուտից տեսել էր դատաստանը։ Նրա դեմքը գունատ էր։ Երեք լեյտենանտն իր կյանքում ոչ մի անգամ ստիպված չէր եղել այդքան ճիգ գործադրել իրեն զսպելու համար։

— Արդյոք կարո՞ղ եմ ամերիկյան բանակին շնորհավորել ևս մի փայլուն հաղթանակի համար,— հարցրեց Կորոլյովը, զգուշաբար արտահայտելով յուրաքանչյուր բառը, ասես վախենալով, որ լեզուն կարող է դավաճանել իրեն։

Կոնվեյը սկզբում չհասկացավ նրա հարցի իմաստը։ Հետո նրա դեմքը կարմրատակեց, բայց գեներալը չհամարձակվեց խստորեն պատասխանել սովետական լեյտենանտին. նա հարցը դրել էր չափազանց քաղաքավարի ձևով։

— Այո,— անտարբեր ասաց նա,— փոքր ինչ կարգ ենք հաստատում քաղաքում։ Իմ ձեռքը բավական ծանր է։

Լեյտենանտն այդ բառերի մեջ որոշակի սպառնալիք նկատեց, բայց ուշադրություն չդարձրեց դրա վրա։

Նրանք լռեցին։ Ապա Կոնվեյն ասաց.

— Ես ձեզ խնդրում եմ ինձ հետ միասին գնալ Լենինի հուշարձանի մոտ։

— Խնդրե՜մ,— պատասխանեց լեյտենանտը. և նրանք դուրս եկան շտաբից։

Անձայն մոտեցան հուշարձանին։ Նրա մոտ մի խումբ մարդիկ էին կանգնած։ Թափով գլուխը վեր բարձրացնելով, Կոնվեյն ատելությամբ նայեց Լենինին։

Լեյտենանտը շատ հանդիստ պատմում էր, թե այդ հուշարձանն առաջ կանգնած է եղել սովետական քաղաքներից մեկում և այնտեղից Գերմանիա են բերել ֆաշիստական զավթիչները։

Կոնվեյը լսում էր, և նրա սիրտը կծկվում էր կատաղությունից։ Ինչպե՜ս էր ատում նա այդ երիտասարդ լեյտենանտին, որ այնպես գործիմաց կերպով պատմում էր հուշարձանի մասին, և այնպես քաղաքավարի, բայց համառորեն շեշտում էր, թե այդ արձանը հանդիսանում է իր Հայրենիքի սեփականությունը։

Լեյտենանտը խոսում էր նրա հետ և միաժամանակ մտածում, թե Կոնվեյն անկասկած կչգանա վճռական միջոցների դիմել հուշարձանը ոչնչացնելու համար։

— Շա՜տ հետաքրքիր է,— հանկարծ կտրեց նա լեյտենանտի խոսքը։— Շատ շնորհակալ եմ ձեր պատմածի համար, շատ շնորհակալ եմ։

Նա նորից հայացքը նետեց հուշարձանին։ Խաղաղ Այսբորնի վրա իջնում էր երեկոն, արևը մայր էր մտել լեռան հետևում։ Եվ մթնշաղի մեջ գեներալին հանկարծ թվաց,



թե Լենինի հոնքերը շարժվեցին և նրա դեմքը փոխվեց, դարձավ դաժան ու ահեղ։

— Այո,— շարունակեց գեներալը,— գերմանացիները պետք է շարունակ տեսնեն այդ չափազանց հետաքրքրական արձանը։ Ուստի ես այսօր իսկ կհրամայեմ, որ նրա լուսավորման համար դրվեն մեծ ուժի լապտերներ։ Ես էլ եմ ցանկանում իմ երեկոյան զբոսանքների ժամանակ տեսնել հուշարձանը։ Մի անգամ ևս շնորհակալություն եմ հայտնում ձեզ, պարո՛ն լեյտենանտ։

Գեներալը մի պահ մտածեց և ապա հարցրեց.

— Էլբայից ձգվող ճանապարհն այստեղո՞վ է անցնում։

Միայն Կորոլյովը կարող էր հասկանալ գեներալի այդ հարցի իմաստը։ Եվ նա ժպտալով նայում էր Կոնվեյին։ Նրանց աչքերը իրար հանդիպեցին։ Գեներալը կռահեց, որ Կորոլյովին հայտնի է, որ սովետական և ամերիկյան հրամանատարությունների պայմանագրության համաձայն, ամերիկյան զորքերը պետք է ետ քաշվեն և որ մոտ ժամանակներս մի քանի ամերիկյան դիվիզիաներ պիտի անցնեն Այսբորն քաղաքով, Լենինի հուշարձանի մոտով։

***

— Ուշք դարձրեք հուշարձանին և աշխատեցեք խնայել մարդկանց,— ասաց լեյտենանտին սովետական գեներալը, երբ Կորոլյովը վերադարձել էր իրենց շտաբը։— Ժամը 24—00-ից սկսած դուք արդեն իրավունք կունենաք դա անելու միանգամայն պաշտոնապես, քանի որ այդ ժամից ուժի մեջ է մտնում ամերիկացիների ետ քաշվելու պայմանը։ Ես կհրամայեմ, որ ձեզ համար պատրաստեն համապատասխան վկայական։ Այդ գիշեր դուք պետք է առանձնապես աչալուրջ լինեք։ Հուսով եմ վաղը ձեզ հանդիպել Այսբորն քաղաքում, Իլյիչի հուշարձանի մոտ։ Հաջողություն եմ ցանկանում ձեզ։

Վերցնելով այն հրամանը, որով ինքը նշանակվում է Այսբորն քաղաքի պարետ, լեյտենանտ Կորոլյովը վերադարձավ ամերիկյան դիվիզիայի շտաբը։

Գեներալ Կոնվեյն անմիջապես ընդունեց լեյտենանտին, բացեց ծրարը, ուշադիր կարդաց թղթերը, ծանոթացավ զորքերը ետ քաշելու պլանին և սկսեց բանակցել մանրամասնությունների մասին։ Նա առանձին ջանասիրությամբ էր հետևում այն բանին, որ սովետական և ամերիկյան զինվորները ոչ մի տեղ չկարողանան հանդիպել միմյանց։

Ամերիկյան զորքերի ետ քաշվելու լուրը հասավ և Հերտրուդայի ընկերուհու՝ Հերդա Ֆիշերի աղքատիկ սենյակը, ուր, Գրյունվալդի ձերբակալվելուց հետո, տեղափոխվել և բնակվում էր Հերտրուդան։ Այդ նորությունն այնքան ուրախալի էր, որ Հերտրուդան առաջին պահին նույնիսկ չհավատաց։ Նա նստած էր գրեթե բոլորովին դատարկ

սենյակում, որի լուսամուտից երևում էր հրապարակը և Լենինի հուշարձանը։

Ուրախության հետ միասին նրան համակել էր մի տագնապալի անհանգստություն. արդյոք ամերիկացիները չեն փորձի դատաստան տեսնել կալանավորների հետ. արդյոք ի՞նչ կերպ են վարվելու նրանց հետ։

Հերտրուդայի մտքերը կամաց-կամաց դարձան հուշարձանի կողմը։ Ռիխարդը, նախքան ամերիկյան ոստիկանները կգային նրան տանելու, Հերտրուդային ամենայն խստությամբ պատվիրել էր հուշարձանը պահպանել սրբության պես, հետևել, որ նա անվնաս մնա։ Եվ Հերտրուդան գործն այնպես էր կազմակերպել, որ հրապարակն իրենց մշտական հսկողության տակ լիներ։

Ուշ գիշերին, երբ խավարն իջավ Սաքսոնիայի լեռների վրա, գեներալ Կոնվեյն սկսեց պատրաստվել «վարժությունների» կատարմանը։ Պետք էր այնպես անել, որ գործողությունները միանգամայն գաղտնի մնային։ Ոչ ոք չպիտի իմանար, թե ինչ է տեղի ունենալու։

Գեներալը որոշել էր իր «վարժությունները» կատարել ռազմական բոլոր կանոնների համաձայն։ «Վարժությունների» ժամանակ ծանր տանկերի վաշտը պետք է անցներ հրապարակով։ Կոնվեյը շփում էր ձեռքերը, նա արդեն սկզբից տեսնում էր «Շերման» սիստեմի հզոր տանկերի ճնշումից տապալված հուշարձանը։

Այդ երեկո Հերտրուդան չէր հեռանում լուսամուտից, զգալով, որ գիշերային լռության մեջ ինչ-որ վատ բան է պատրաստվում։ Նա տեսնում էր խավարի մեջ շարժվող ստվերները, լույսերի արտացոլումը զենքերի վրա։ Նա ականջ էր դնում հրապարակից լսվող ձայներին։ Կամաց-կամաց քունը սկսեց հաղթել նրան, գլուխը դանդաղորեն իջավ լուսամուտի գոգին։

Հանկարծ Հերտրուդան ցնցվեց և բարձրացրեց գլուխը... Ոչինչ չէր փոխվել. լռություն և ամայություն։ Բայց ահա նրա ականջին հասավ ինչ-որ աղմուկ։ Այժմ նա պարզորոշ տեսնում էր այլանդակ, փոփոխական լույսից աղճատված ստվերներ, լսում էր մոտորների խլացված հռնդյունը։

Հերտրուդան չէր հասկանում, թե ինչ է կատարվում։ «Երևի ամերիկացիները պատրաստվում են հեռանալ,—մտածում էր նա,— և տանկերը դուրս են բերել հրապարակ. մի՞գուցե նրանք պարզապես արշավանքի են պատրաստվում»։

Հերտրուդա Գրյունվալդը տեսավ, թե ինչպես, լայն թրթուրների վրա օրորվելով, հրապարակ է սողում մի վիթխարի «Շերման»։

Հերտրուդան միայն այժմ հասկացավ ամեն ինչ և ճչաց սարսափից։ Գլխաբաց, աղքատիկ հագնված, նա հրապարակով մեկ վազում էր տանկին ընդառաջ, և թվում էր, թե թնդանոթը իր երկար փողն ուղղել է նրա կրծքին և շարժվում է նրա վրա։

Լենինի հուշարձանին մոտենում էին՝ մի կողմից երկուհարյուր միլիմետրանոց զրահ և երեք դյույմանոց թնդանոթ ունեցող տանկը, որի ետևում կանգնած էր հետևակի մի գումարտակ, հրանոթային մի մարտկոց, պայթեցնողների մի դասակ և այլ տանկեր, իսկ հակառակ կողմից՝ անպաշտպան կինը, որի միակ զենքը Լենինի նկատմամբ ունեցած հավատն էր, Լենինի անունը, Լենինի խոսքը։

Հերտրուդան վազում էր դեպի հուշարձանը, դեռևս չիմանալով, թե ինչ պիտի անի նրան պաշտպանելու համար։ Նրան համակել ու առաջ էր մղում անսպասելի մի ուժ, և նա այլևս չէր կարող կանգ առնել։ Այդ ուժը նրան մղում էր շարունակ առաջ ու առաջ, թնդանոթի սև երախն ավելի ու ավելի էր մոտենում, իսկ Հերտրուդան կանգ չէր առնում։ Նրա սպիտակ մազերը ցաքուցրիվ էին եղել արագ վազելուց։ Սիրտը զարկում էր մոլեգնորեն, և նրան հուզում էր միայն մի միտք, «հասնել, հասնել»։

Տանկը շարժվում էր ուղիղ դեպի հուշարձանը։ Գեներալ Կոնվեյի հաշիվը շատ պարզ էր. տանկը կճզմի, կտրորի հուշարձանը. չէ՞ որ դրանից շատ ավելի մեծ արգելքներն են խորտակել ծանր տանկերը։ Բայց, նկատելով ընդառաջ վազող կնոջը, գեներալն սկսեց անհանգստանալ։

Հերտրուդան արդեն կանգնած էր պատվանդանի մոտ, երբ հրանոթի փողը գրեթե հասել էր հուշարձանին։ Տանկավարը ուղիղ իր առաջ, առաջամասի զրահի դիմաց կնոջ

դեմք նկատեց։ Այդ դեմքն այնքան անհասատ էր ու ոգեշնչված, աչքերն էլ այնպիսի վճռականություն էին արտահայտում, որ զինվորն ակամա կանգնեցրեց տանկը։ Եվ կանգնեցնելուն պես լսեց գեներալի ճղճղան ձայնը.

— Ինչո՞ւ կանգնեցիր։ Դատի կտրվեք, դատի կտրվեք հրամանը չկատարելու համար։ Առա՛ջ։

— Այնտեղ մարդ կա... կին կա կանգնած,— ասաց զինվորը գունատվելով։

— Առա՛ջ,— գոռաց գեներալը։

Բայց տանկը չշարժվեց տեղից։




Եվ այն ժամանակ գեներալը հասկացավ, որ, իսկապես, մարդիկ չափազանց տարօրինակ բան կհամարեին այդ կնոջ զոհվելը «վարժությունների» ժամանակ։ Այդպիսի միջադեպը չես կարող թաքցնել քաղաքի բնակիչներից, և այն ժամանակ արդեն ոչինչ չես կարող գաղտնի պահել սովետական իշխանություններից։

— Հեռացնե՛լ այդ ջադուին,— հրամայեց գեներալը։

Տանկից դուրս թռան երկու զինվոր և նետվեցին Հերտրուդայի կողմը։

— Արա՛գ, արա՛գ,— ճչում էր գեներալը, նայելով, թե ինչպես են զինվորները ջանում պոկել կնոջ մատները, որոնցով նա կառչել էր հուշարձանին։

Այդ պահին գեներալը վախենում էր ամեն ինչից. վախենում էր Լենինի հուշարձանից, վախենում էր այդ խիզախ կնոջից և, վերջապես, այդ ամբողջ քաղաքից, որը շունչն իրեն քաշած տեսնում ու լսում էր այն ամենը, ինչ տեղի էր ունենում հրապարակում։

— Ներեցեք, պարո՛ն գեներալ, այս ի՞նչ է կատարվում այստեղ,— լսվեց տանկի մոտ մի հանգիստ, բայց շատ վճռական ձայն, և լեյտենանտ Կորոլյովը շտապով քայլերն ուղղեց դեպի հուշարձանը։ Նա մոտեցավ Հերտրուդա Գրյունվալդին և նրա հետ միասին կանգնեց տանկի առաջամասի զրահի դեմ։ Կոնվեյն ինքն իրեն ուտում էր զայրույթից։ Նրա ծրագիրը տապալվեց։ Տփոթմունքից ու անզոր ցասումից նա դողում էր ինչպես տենդի մեջ։

— Մենք վարժություններ ենք կատարում,— պատասխանեց գեներալը՝ դժվարությամբ արտաբերելով բառերը։

— Շատ տարօրինակ տեղ և ժամանակ եք ընտրել, գեներա՛լ,— ասաց Կորոլյովը։— Հարկ եմ համարում նախազգուշացնել ձեզ, պարո՛ն Կոնվեյ, որ այժմ ես եմ Այսբորն քաղաքի պարետը։ Եվ ես չեմ հեռանա այս հուշարձանից, մինչև որ ձեր այդ «վարժությունները» չավարտվեն։

— Դե՛ն քաշվեցեք,— մռլտաց գեներալը։ Կորոլյովը չշարժվեց տեղից։

Որքան գեներալը գազազում էր, այնքան Կորոլյովը անվրդով էր ու հանգիստ։ Նա զգում էր, որ հիմա ոչ ոք չի կարողանա ոչնչացնել հուշարձանը, հիմա նրա պատվանդանի տակ կանգնած են ամբողջ Սովետական Բանակը, ամբողջ Սովետական Միությունը։ Այդպիսի ուժի դեմ դուրս գալը միստր Կոնվեյի բանը չէ։

Գեներալն ընդոստ շարժումով իջավ տան-

կի աշտարակի մեջ և փակեց դռնակը։ Նա նայում էր լեյտենանտ Կորոլյովին և մտածում, որ ավելի լավ է չհանդիպել այդ տեսակի մարդկանց, որ նրանց հետ մենամարտելիս ոչ մի տանկ չի կարող օգնել։ Կոնվեյը նորից նայեց կնոջը, որը կանգնած էր լեյտենանտի կողքին։ Կինը վաղուց կարող էր գնալ, հուշարձանի պահպանությունը թողնելով լեյտենանտին. բայց նա չէր հեռանում և ձեռքերով ամուր կառչել էր գրանիտե պատվանդանին։ Դիվիզիայի հրամանատարը հրաման տվեց, և տանկը, անճոռնի կերպով շուռ գալով, ետ սողաց։ Խավարի մեջ ինչ-որ տեղ լսվեցին զսպված ձայներ, մոտորների հռնդյուն, ծանր ոտնաձայներ, հրանոթների ռետինե դողերի մեղմ քստքստոց ասֆալտի վրա։

«Վարժությունները» ավարտվեցին։

Քաղաքի լայնարձակ հրապարակում բարձրանում էր Լենինի հուշարձանը, իսկ նրա պատվանդանի մոտ կանգնած էին սովետական սպան և գերմանուհին՝ կոմունիստի կինը, որն ինքն էլ կոմունիստ էր։ Նրանք իրենց հայացքը հառել էին գիշերվա խավարին՝ պատրաստ ետ մղելու, ճզմելու և ոչնչացնելու ամեն մի վտանգ։ Իսկ մյուս օրը սովետական զորքերը մտան քաղաք։ Լեյտենանտ Կորոլյովը կանգնած էր հրապարակում, հուշարձանի պատվանդանի տակ, ողջունելով իր հրամանատարին։

Գեներալն իր զորքերի գլուխն անցած մտավ Այսբորն։ Հետևակ զումարտակը իջնելով ավտոմեքենաներից, շարք կանգնեց հրապարակում, հրամանի խոսքերը թնդացին շարքերի գլխավերևում, և շուրջն այնպիսի լռություն տիրեց, որ պարզ ու որոշ լսվում էին ասֆալտի վրայով քայլող գեներալի ոտնաձայները։ Գեներալը մոտեցավ Լենինի հուշարձանին, կանգ առավ լեյտենանտի կողքին։ Նրանց շրջապատեցին գերմանացիները, որոնք հանդիսավոր լռության մեջ հանել էին գլխարկները։ Գեներալը հուշարձանի պատվանդանի տակ դրեց կարմիր վարդերից հյուսված մի պսակ։ Գերմանացի բանվորներն էլ ուրիշ շատ պսակներ բերին։ Եվ հիմա պատվանդանը թաղված էր ծաղիկների մեջ։

— Ողջունում եմ ձեզ,— ասաց գեներալը,— ողջունում և շնորհակալություն եմ հայտնում բոլոր ազնիվ, բարի կամքի տեր մարդկանց, որոնք փրկել ու պահպանել են մեծ Լենինի արձանը։ Ես սովետական հրա-



մանատարության կողմից լիազորված եմ այս արձանը թողնելու այստեղ, Այսբորն քաղաքում։ Մեծ Լենինի կերպարը, նրա գործն ու գաղափարները ձեզ կոգեշնչեն ու կօգնեն կառուցելու ձեր նոր, դեմոկրատական պետությունը։

Բազմության խորքից ծայր առավ և հրապարակով մեկ տարածվեց երգը, ժողովրդի միասնության և հաղթանակի հզոր, ահարկու և անպարտելի երգը։

Գրանիտե պատվանդանին անսասան կանգնած էր Լենինի արձանը, և թվում էր, թե Լենինը հենվում է այդ բոլոր մարդկանց ուսերի վրա, այն մարդկանց, որոնք պատրաստ են մարտնչելու վերջին ու վճռական կռվում՝ հանուն Լենինի և Ստալինի գաղափարների, հանուն ողջ աշխարհի ժողովուրդների մոտալուտ երջանկության։

Թարգմ. Ս. ՎԱՀՈՒՆԻ

# Տանկը Տուշենսկոյեում

*(Հատվածներ)*

ԱՏ. ՇՉԻՊԱՉՈՎ

1

Եղանակը դարձյալ միանգամից փոխվեց:
Նորից Շուշենսկոյեն անաստղ է, անլուսին:
Ու ֆան աչքդ կտրի, անձայր ու հողմածեծ
Սիբիրն է տարածվում բյուր վերստերով չորս դին:

Դեռ ոչ պարտպատմության պայծառ սենյակներում,
Ուր մտքումդ հազար թիվ ու դեպք է հառնում,
Այլ քարտեզի վրա միայն կգտնես դու
Մինուսինյան կոչվող երկրամասը հեռու:

Տասնամյակներ կանցնեն վշտի ու դառնության,
Մինչև բացվի խոնավ այգը Հոկտեմբերի.
Դեռ «Ավրորան» զինող բնդանոթները այն
Որպես երկաթահանք գրկումն են լեռների:

Վառվում է մոմն հանդարտ, ստվերներն են դողում,
Բուքն է ձյունով ծածկել և՛ լուսամուտ, և՛ դուռ,
Բայց առանցքը երկրի այստեղ է, այս գյուղում,
Ուր Լենինն է այսօր խորհում ու աշխատում:

Ուշ է: Լուսամուտն է սպիտակել ձյունից,
Բայց դեռ գրում է նա, գրում է անդադար.
Տասնիններորդ դարի մրրիկների միջից
Նա քեզ է պարզ տեսնում, քե՜զ, ո՛վ քսաներորդ դար:

Գիտե՝ ինչի մեջ է ուժը Ռուսաստանի,
Ինչն է լուսավորում զալիքը մեր խնդուն:
Չի չորացել բեև բանաքը տողերի,
Բայց տրված է նրանց արդեն անմահություն:

Աննշմար է այնքան հյուղն այս գրկում երկրի,
Բայց ապակու վրա նախշերն անհա ձմռան.
Աշխարհագրությունն է այստեղ ողջ Սիբիրի՝
Օվկիանոսից մինչև լեռները Ուրալյան:

Եվ սեղանին ներմակ էջեր չեն երևում,
Այլ նույն այդ ձյունապատ հեռուն է ռուսական,
Նահանգները բոլոր... որոնց ցուցակներում
Նա հաշվի է առել և տունը մեր աղքատ:

Բայց ամեն ինչ, վիշտն էլ, հաշվի է առել նա:
Մոմը նարնատելով վառվում է սեղանին:
Թող մութ լինի, և թող բուքը անվերջ ոռնա.
Ողջ Ռուսիան է տեսնում նա մտքով այս ժամին:

Հիշում է Կազանի մութ փողոցները շեղ,
Գրադարանները հարազատ Մոսկվայի,
Պետերբուրգն է հիշում, փռված մեծ ու շքեղ.
Գրանիտյա գրկում՝ գորշ ջուրը Նևայի:

Պայմանական զանգեր, և սենյակումն է նա:
Հին ժամացույցն է նույն գունաթափված պատին:
Ժանգոտված շղթայով ծանրոցները անհա
Դանդաղ ձիգ են տալիս ժամանակը կրկին:

Խուլ գիշեր է: Շուրջը Նևսկու ուղեկալի,
Մոլորեցրած անքուն լրտեսներին բոլոր,
Ահա բանվորական խմբակումն է էլի,
Նայում է սաների աչքերին պարզ ու խոր:

Մահվան դեմ դուրս կգան, բայց չեն դավաճանի:
Ջերմանում է սիրտը այդ աչքերից հստակ:
Ռուսիա՛, դրանց մեջ է երազդ ապագայի,
Ջահելությունը քո, ո՛վ բանվոր դասակարգ:

2

Ի՜նչ առավոտ և ի՜նչ ճերմակություն
անդորր:
Միահյուսված այդ ողջ ճերմակության
անբիծ,
Շողում են Սայանի լեռները հեռավոր,
Երևում են նույնիսկ Շուշենսկոյե գյուղից:

Սահաղաշտում ձյունն է ալիք-ալիք փռված.
Շաղվում են աչքերդ թմբերից այդ ճերմակ:
Փոքրիկ տղաներն են Լենինի հետ կանգնած,
Բահերը վեր պարզած դրոշների նման:

Շնչում են նրա հետ նույն սառն օդը ձյունի,
Իրենց ոտքի հետքն են հյուսում նրա
հետքին,
Թեև գուցե նրանք անունը Լենինի
Շատ տարիներ հետո լսեն երախտագին:

Ո՞ր տղան չի ուզի լինել առաջինը,
Երբ մինչև հոնքերը եղյամի մեջ կորած,
Ինքն էլ է մանկաբար ծիծաղում, Լենինը.
Եվ խումբը մաքրում է ձյունն ավելի արագ:

Տարածվում է Ռուսիան, փռվում
անպարագիծ.
Մի ծայրից մի ծայրը չի հասնի հողմն
անգամ:
Սակայն ամենուրեք կյանքը նույնն է նորից
Շուշենսկոյեցի և թե կոստրոմացի մանկան:



Ամեն տեղ էլ կյանքը՝ դեռևս կույր այնքան,
Խլում է զավակին տանից իր հայրենի:
Չապաևը նույնիսկ տաս տարեկան չկա,
Բայց տանջում է նրան չարչին բեյարանի:

Իսկ Ուրժումում ձյուն է իջնում խաղաղ,
փափուկ,

Ջրու կողմ անծայրածիր անտառներն են
փռվել,
Կոստրիկով Սերյոժան, այդ որբ տղան
խղճուկ
Իր կյանքից ի՞նչ գիտե, ի՞նչ կարող է
պատմել:

Թբիլիսին ահա, աշտարակները հին՝
Պատերի ճեղքերում կանաչ մամուռ ու խոտ:
Ստալինը՝ քսանամյա կենսախինդ
պատանին
Անցնում է մտախոհ փողոցներով կավոտ:

Հանում է գլխարկը: Կովկասը բարձրագահ
Կանգնած է նրա դեմ ողջ հասակով հպարտ:
Ծեր Կազբեկից եկած հովերը մեղմասահ
Շոյում են պատանու մազերը քնքշաբար:

Երբ մոմերի բոցը ժողովի ծանր օդից
Թուլանում է արդեն, իսկ վեճն՝ ուժեղանում,
Նրա պարզ խոսքերում՝ հանդարտ,
իմաստալից,
Հնչում է Լենինի անունն իբրև երդում:

Չեն բաժանի նրանց լեռները Կովկասի,
Ոչ էլ Սիբիրն հեռու: Կհանդիպեն նրանք,
Որ դարերում հավերժ կանգնեն իրար
կողքի:

Բայց դանդաղ են անցնում օրերը
բռնության,
Սիբիրյան աքսորի օրերը տաղտկալի:
Հիմա բուդյոնովյան խիզախները հեծյալ,
Հիմա չապաևյան հերոսները գալիք
Օրորոցումն են դեռ: Սակայն Ռուսաստանում
Անհամար են նրանք ինչպես խոտը
դաշտում:

3

Նույն սենյակը դարձյալ, հին ժամացույցը
նույն,
Ծանրոցները... արդեն դարձած
կանաչագույն

Առանց ետ մնալու կյանքից, ժամանակից,
Թվացույցի վրա, որ նիրհած է թվում,
Ժամացույցի սլաքն է պտտվում կրկին...
Երկրագունդն է դարձյալ ուղեծիրով
թռչում:

Մաշված ու հեռավոր ճամփաներն են
ձգվում
Մանկությունից, խարխուլ ցանկապատից
էլի...
Այս հին ժամացույցն էր վայրկյաններով
չափում
Տարիները ռազմի, ռևոլուցիաների:

Արագընթաց ու պարզ Ենիսեյի ափին,
Դեռևս ոչ այնքան մարդաշատ այս երկրում,
Ակնածանքով ահա կանգնած եմ ես լռին
Այս սեղանի առաջ, այս
տուն-թանգարանում:

Այս սեղանի առաջ Լենինն ինքն է նստել:
Ես նոր էի ծնվել, երբ հանճարեղ մտքով
Ճակատագիրը իմ նա վճռում էր այստեղ:

Գնացրահեր ու բոբիկ մանկությունս անցավ,
Եվ Մեծ Հոկտեմբերի օրը երջանկաբեր
Որպես ժառանգություն, երկիրն իմ ստացա,
Ստացա ես լեռներ, դաշտեր, գետեր, ծովեր:

Բոսոր դրոշի տակ ընդունեցի սրտանց
ժողովրդիս փառքն ու պատիվն իբրև որդի...
Պիլոտկաս երբերում մաշված,
գունաթափված,
Հանում եմ, չհասած շեմքին այս խրճիթի,
Զգուշորեն ոտք եմ դնում ես հատակին,

Քայլում եմ տնակում անաղմուկ ու լռին:
Սրբազան է այստեղ լռությունը անհուն,
Ես ներծծում եմ այն որպես անմահություն:

Բայց լռությունը այս ոչ թե աղոթքների,
Այլ երդման համար է: Գրկում այս
լռության,
Ավելի է հուժկու որոտը մարտերի...
Այստեղից էլ այսօր տեսնում եմ պարզ
այնքան



Պատերը հին Կրեմլի: Ստալինն է հարազատ
Կանգնած մեզ հետ, ձեռքը առաջ պարզած
հանդարտ.
— Թո՛ղ դրոշը Լենինի ձեզ հովանի լինի...
Եվ դարերն են կրկնում խոսքերն Ստալինի:

*Թարգմ. Պ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

Գ. Ր. ՔԵՇԻՇՅԱՆ

# ԱՊՐԻԼԻ ՔԱՄԱՆԵՐԿՈՒՍԸ

*Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ*

*Դասամիջոց է: Դպրոցի բակում իրար ետևից վազում են երկու երեխա: Արևն արդեն տաքացնում է Միջերկրական ծովի ափին գտնվող Բեյրութ քաղաքը և տղաները քրտնել են: Դպրոցի շուրջը բարձրացված բարձր պատի պատճառով ծովը չի երևում. բայց ալիքների համաչափ ձայնը, երբ նրանք փշրվում են ծովափի ժայռերին, գալիս հասնում է նրանց: Ա՛յ, երկու ժամ ևս կպարապեն, հետո նրանք երկուսով կվազեն տուն, այնտեղից ուղիղ դեպի ծով: Նրանք գլխիվայր կնետվեն բարձր ժայռից և մինչև երեկո, մինչև արևը իջնի հավասարվի ծովին, նրանք լող կտան կապո՜ւյտ-կապո՜ւյտ ջրերում, խաղ կանեն ալիքների հետ, կպառկեն ավազի վրա:*

*Ետևից վազող Զարեհը վերջապես հասնում և բռնում է Ջեքիին: Շնչասպառ եղած, ծիծաղելով նրանք կանգնում են իրարու դիմաց և խոսել չեն կարողանում:*

*— Բռնեցի՛,— բառերը հատ-հատ արտասանելով ասում է Զարեհը,— բռնեցի՛, առաջինը ես եմ ծով մտնելու:*

*— Պարզ է,— պատասխանում է Ջեքին տխրությամբ.— բայց վաղը դու չես կարողանա երկու րոպեում բռնել ինձ:*



Նրանք ծիծաղում են, գրկվում և նոր միայն զգալով արևի այրող ճառագայթների ջերմությունը, անցնում են բակի բարձր ծառերից մեկի ստվերի տակ։

Այնքա՜ն տարված են նրանք իրենց խաղով, ծրագրերով, որ չեն նշմարում կողքի ծառի տակ կանգնած երկու աղջիկների՝ Արփիկին ու Ցարիդեին, որոնք ինչ-որ շատ գաղտնի խոսակցությամբ են տարված, մեկ-մեկ ցույց են տալիս տղաներին։

❊❊❊

Թվաբանության ժեր, ակնոցներով հազիվ տեսնող դասատուն, դասարան է մտնում տետրակներով ծանրաբեռնված։ Երեխաները կանգնում են։

— Նստեցե՛ք,— ասում է ուսուցիչը, ապա տետրերը բաժանում է աշակերտներին։

— Երեկվա խնդիրը ճիշտ են լուծել միայն երկու հոգի,— անբավականությամբ ասում է նա,— միայն երկու հոգի. և նույն տղաները, որոնք ամբողջ տարին ամենաբարձր գնահատականներն են ստացել՝ Զարեհն ու Ջեքին։ Ինչո՞ւ միայն նրանք են կարողանում հասնել այդ արդյունքին...

Ըստ երևույթին գիշերը նա լուրջ մտածել էր այդ մասին և պատրաստվել էր երկար խոսել, բայց առջևի շարքից լավ հագնված, բարձրահասակ մի տղա խանգարում է նրան.

— Որովհետև նրանք իրարից արտագրում են, մուալլի՛մ[1]։

[1] Մուալլիմ—արաբերեն՝ դասատու։

Նրա կողքի նստածներից մի քանի հոգի ուրախ ձայնակցեցին. ետևի շարքից դժգոհություն լսվեց. դասատուն բարձրացրեց ձայնը.

— Այդ ձեզ չէր խանգարում, Բարուդի՛, որ դուք էլ ճիշտ լուծեիք խնդիրը. դուք չեք աշխատում, ահա թե ինչ։

Ետևի շարքը ծիծաղում է։ Առաջինները բռունցք են ցույց տալիս, բայց մյուսները դրանից ազդվողները չեն։

— Դասերից հետո կտեսնվենք,— բարկությունից կարմրած Բարուդին մարտահրավեր է նետում։

— Հաճույքո՛վ,— նրան պատասխանում է Ջեքին,— միայն թե լաց լինելով հորդ մոտ չգնաս դարձյալ։

— Աղմուկին վե՛րջ տվեք,— բարկանում է դասատուն ակնոցների տակից խոժոռ նայելով։— Հիմա բաց արեք ձեր տետրակները և լուծեցեք № 162 խնդիրը. առանց ձայնի, առանց իրար օգնելու։

Լռությունը վերջապես հաստատվում է։ Գլուխները խոնարհվել են տետրերի վրա. քրտինքի կաթիլներ են երևում աշակերտների ճակատներին։ Ոմանք մատիտներն են կրծում, ոմանք արդեն իսկ գրում ու ջնջում, իսկ ուրիշներն աչքերը գաղտնի պտտեցնում կողքինների տետրակների վրա։

Հանկարծ մի թղթի կտոր է ընկնում Զարեհի սեղանի վրա։

«Դարձյալ օգնություն են խնդրում դասի ժամանակ»— տհաճությամբ մտածում է Զարեհն ու կամաց, աննշմարելի բաց անում այն։

«Դասերից հետո սպասեցեք բակում, շատ կարևոր ասելիք ունենք։ Արփիկ, Ցարիդե»։ Կարդում է Զարեհն ու զարմացած նայում կողքի նստարանին, որտեղ երկու աղջիկներն են նստած և կարծես լրջորեն աշխատում են խնդրի վրա։

Թղթի կտորը փոխանցվում է Ջեքին։ Նա նայում է Զարեհին, հետո աղջիկներին և բան չհասկացած հարցական շարժում է գլուխը։

— Ժամանակը վերջանո՞ւմ է,— հնչում է դասատուի ձայնը։— Այսօր ուշացաք Ջեքի՛, Զարե՛հ,— դիմում է նա տղաներին։

Գլուխները դարձյալ հակվում են տետ-

բակների վրա։ Մի րոպե մոռացվում է ամեն ինչ. միայն չոր թվանշաններն են, որ շարվում են իրար տակ, գումարվում, հանվում, բազմապատկվում կամ բաժանվում, որպեսզի դուրս գար այն վերջինը, որ պատասխան է կոչվում։

***

Տղաներին տեսնելով Արփիկն ու Ցարիդեն շտապ մոտեցան։ Ցարիդեն սկսեց արագ պատմել.

— Բարուդին այսօր նորից մոտեցավ ինձ, ասաց, որ ձեզ հետ ընկերություն չանեմ, դուք վատ մարդկանց տղաներ եք, պետության թշնամիների տղաներ, թե այսօր, գործարանից դուրս գալիս ձերբակալելու են ձեր երկուսի հայրերին։

— Այսօ՞ր, ինչո՞ւ համար, ինչո՞ւ այսօր,— հուզված վրա տվեց Զարեհը։

— Չէ՞ որ ապրիլի քսաներկուսն է այսօր, Լենինի ծննդյան օրը,— մեջ մտավ Արփիկը արագ խոսելուց բառերը իրար խառնելով.— ասել է, որ այսօր բանվորական թաղերում միտինգ կլինի. և որպեսզի արգելեն, պիտի ձերբակալեն ակտիվ բանվորներին։



— Իսկ այդ Բարուդին որտեղի՞ց գիտի այդ բոլորը,— խոսակցության մեջ մտավ Ջեքին։

— Նրա հայրը մեր ռայոնի ոստիկանապետն է, չէ՞. նրանց տանը հավաքված են եղել, խոսել են. իրեն ցույց տալու համար այդ բոլորը պատմեց ինձ։

Տղաները մնացին անխոս, շվարած։ Լռության մեջ լսվեցին ժայռերի վրա փշրվող ալիքների խուլ շառաչը. երեկոյան մոտ ծովն սկսել էր ալեկոծվել։ Երկնքում ամպեր կային. գուցե և անձրև գար։

— Ի՞նչ եք կանգնել,— նրանց վրա բարկացավ Արփիկը,— դե՛, վազեցե՛ք, գնացեք իմաց տվեք։

— Մենք էլ գնանք,— ասաց Ցարիդեն,— մենք մեր գործը արդեն արեցինք։

Աղջիկները հեռացան։ Որոշ ժամանակ տղաները մնացին կանգնած։ Ի՞նչ անեին։ Պարզ էր, պետք էր շտապ վազել գործարան, զգուշացնել հայրերին. բայց դրսում Բարուդին իր ընկերներով սպասում էր կռվելու համար։ Դե՛, այնքան էլ սարսափելի չէին նրանք. սա առաջին անգամը չէր. բայց դա կարող էր ուշացնել նրանց։ Իսկ եթե ուշանային...

Երկուսն էլ երևի նույն բանի մասին էին մտածում։

— Անցնենք պատի վրայով,— առաջարկեց Ջեքին,— թող այսօր հպարտանան, որ մեզ փախցրին, իսկ...

— Իսկ մենք նրանց հետ վաղը կտեսնըվենք,— նրա միտքը ամբողջացրեց Զարեհը։

***

Թևերի տակ պինդ սեղմած դպրոցական հին պայուսակները նրանք առանց տատանվելու նստեցին առաջին տրամվայը։

— Դու առաջ գնա,— ասաց Ջեքին,— եթե տոմսավաճառը մեկիս բռնի, մյուսը տեղ կհասնի։

Երրորդ կանգառում Ջեքին ցած թռավ։ Տոմսավաճառն ուզում էր նրա թևից բռնել։ Զարեհը պահվեց մի բարձրահասակ մարդու ետև ու տեղ հասնելով, սկսեց վազել դեպի

գործարան։ Շատ քիչ ժամանակ էր մնացել. պետք էր հասնել։ Գործարանի պահակը նույնիսկ չտեսավ, որ լայն դարբասներից մտնող ավտոյի ետևից մի տղա վազելով անցավ մուտքը և կորավ առաջին իսկ շենքի մեջ։

Նա շնչասպառ կանգնեց հոր առաջ։

— Հայրի՛կ,— ասաց նա,— մեծ դռնից դուրս մի՛ եկեք, ձեզ ձերբակալելու են. քեզ, Ջեքիի հորը, ուրիշներին։

— Դու այդ որտեղի՞ց գիտես, ճուտի՛կ,— նրա խուզված գլուխը շոյելով ասաց Ջեքիի մոտեցած հայրը։

— Ոստիկանապետի տղան է ասել, Բարուղին։ Դա ճիշտ է. դրսում ոստիկաններ կան. չէ՞ որ այսօր Լենինի ծննդյան օրն է և դուք պետք է միտինգներ անեք։

Հայրերը իրար նայեցին. մի թեթև ժպիտ խաղաց նրանց դեմքերի վրա։ Ջեքիի հայրը գրկեց Ջարեհին։

— Ապրես, քա՛ջ տղա,— ասաց նա,— իսկ որտե՞ղ է Ջեքին։

— Միասին էինք գալիս, տրամվայից իջեցրին. հիմա երևի վազում է, որ հասնի։

Հայրերը հպարտություն զգացին։ Մեծանում, հասնում է նոր սերունդը, և այդ տարիքից արդեն շատ բան է հասկանում։ Այն, ինչ իրենք գլխի ընկան հասուն տարիքում, իրենց որդիներն արդեն մանկուց գիտեն։ Եվ այդ երկու ընկերը, որոնք տասնյակ տարիներ միասին աշխատել էին, պայքարել ու ապրել, ավելի հարազատ զգացին։

— Շտապեք, հայրի՛կ,— ասաց Ջարեհը, տեսնելով, որ նրանք հանգիստ կանգնել են։

— Դու տուն գնա,— ասաց հայրը մեղմ ու ցածր ձայնով,— դու տուն գնա։

— Իսկ դո՞ւք, միտինգի՞։

— Այո։

— Ես էլ եմ ուզում միտինգի գնալ,— աղերսեց տղան,— ինձ էլ տարեք. ես էլ եմ Լենինին շատ սիրում։

Հայրերը իրար նայեցին։

— Թող մնա,— ասաց Ջեքիի հայրը։

— Մնա՛,— ասաց հայրը Ջարեհին,— մնա ու լավ լսիր Լենինի մասին, ինչ որ լսես, մտքումդ լավ պահիր։

— Որտե՞ղ։

— Այստեղ։

— Գործարանո՞ւմ։

— Այո, ոստիկանները ուզում են մեզ ձերբակալել, որպեսզի չտոնենք մեր տոնը, իսկ մենք կտոնենք հենց այստեղ, գործարանում։

Հնչեց աշխատանքի ավարտման շչակը։ Եվ հանկարծ, բոլոր ցեխերից բանվորները սկսեցին վազել դեպի այն ցեխը, որտեղ Ջարեհն էր գտնվում։ Հավաքվեցին բոլորը։ Ամեն ինչ շատ լավ էր կազմակերպված։ Սեղանի վրա բարձրացավ մի երիտասարդ բանվոր։

— Ընկերնե՛ր,— դիմեց նա վստահ, անվախ, բարձր ձայնով,— այսօր տոնում ենք մեր ուսուցչի, մեր ազատարարի ծննդյան տոնը։ Աշխարհում չկա այնպիսի ուժ, որ խանգարի մեզ տոնել այս օրը։ Չկա այնպիսի ուժ, որ հաղթի մեզ, Լենինի զինվորներին, Ստալինի զինվորներին։

Ջարեհը լսում էր հիացած, հափշտակված։ Նա իրեն զգում էր ավելի մեծացած, ավելի ուժեղացած։ Կուրծքը ուռչում էր հպարտությունից, երբ նայում էր շուրջը հավաքված ուժեղ ու առնական մարդկանց, որոնք լսում էին հռետորին։

Հանկարծ իրարանցում եղավ։ Գործարանում գլխի էին ընկել և ոստիկանությունը ներս էր խուժում միտինգը խանգարելու։ Դռան առաջ կռիվ սկսվեց, իսկ հռետորը ավարտելով իր ճառը եզրակացնում էր։

— Ուզում եք, որ չտոնենք մենք և կարծում եք, որ կհաջողվի ձեզ խանգարե՞լ մեզ։ Ո՛չ, սխալվում եք, Լենինը արդեն մեր սրտերումն է, մեր ուղեղներում, մեր գիտակցության մեջ։ Լենինի գործն անմահ է և կհաղթանակի։

Ջարեհի ետևից մեկը սկսեց ծափահարել։ Ջարեհը շուռ եկավ՝ Ջեքին էր։ Բանվորներն սկսեցին դեպի ելքը գնալ հանդարտ։ Միտինգն ավարտված էր։ Ոստիկանները խոժոռ հայացքով նայում էին բոլորին, ուզում էին խոսողին ու կազմակերպիչներին գտնել, բայց բանվորներից ոչ ոք նրանց չէր նայում։ Բոլորն էլ հպարտ, արհամարհական հայացքով անցնում էին։

Նրանց մեջ երկու տղա էլ կային. իրար ձեռք բռնած, նույնպես հպարտ, կարծես նույնիսկ մի քիչ մեծացած։ Այդ Ջարեհն ու Ջեքին էին։



«Իսկ ձեզանից ո՞վ կարող է մուկ ու կատու խաղալ»։ Նկար Ն. Ն. ԺՈՒԿՈՎԻ։

# ԳԱՐՈՒՆ

Ե. ՏՐՈՒՏՆԵՎԱ

Երբ որ ծնվեց Լենինն անմահ
Ե՛վ արև էր, և՛ գարուն,
Կարկաչեցին գետերն ուրախ
Ալիքներով փրփրուն։

Նոր, փոքրկուն կյանքով չքնաղ
Հայրենի հողն է լեցուն,
Զյունից ազատ դաշտերն արձակ
Հասկերին են սպասում։

Այս գարնան հետ նոր կյանք առան
Ամեն մի թուփ ու ծաղիկ,
Եվ նրանց հետ՝ մեծ Լենինի
Թոռնիկները երջանիկ։

Գարնան զվարթ գետակի պես
Նրանք ժիր են ու կայտառ...
Երջանկությունն է շողշողում
Հայրենիքում ձեզ համար։

Թարգմ. Հ. ՍԵՎԱՆ

# ԱՌԱՋԻՆ ԴՊՐՈՑԸ

Ս. ԱԼԻԽԱՆՅԱՆ

*Հայաստանում սովետական կարգեր դեռևս չէին հաստատվել, երբ Լենինն ու Ստալինը Մոսկվայում բաց արեցին հայկական առաջին սովետական դպրոցը։*

*Այն ժամանակ ընկեր Ստալինը հանդիսանում էր Ազգությունների գործերի ժողովրդական կոմիսարը։ Այս աշխատանքը չափազանց բարդ էր ու դժվար։ Լենինը առաջադրելով ընկեր Ստալինի թեկնածությունը ասել է, որ պարտիան ուրիշ թեկնածու չունի, բացի Ստալինից, քանի որ այդ կոմիսարիատը պետք է զբաղվեր Ռուսաստանում ապրող 60 ազգերի և ժողովուրդների կյանքի բոլոր հարցերով։ Լենինն ասում էր, որ ընկեր Ստալինը ոչ միայն ազգային հարցի մեծ թեորետիկ է, այլև բոլոր ազգերի կողմից ճանաչված առաջնորդ։ Բոլոր ազգերի ներկայացուցիչները ազատ ու վստահ կգնան ընկեր Ստալինի մոտ և կպատմեն իրենց կարիքների մասին։ Ընկեր Ստալինին ճանաչում և սիրում էին բոլոր ժողովուրդների աշխատավոր մասսաները։ Նրան այդ պոստում նշանակելը մեծ բախտավորություն էր ինչպես մյուս, այնպես էլ հայ ժողովրդի համար։*

*Ազգային լեզուներով նոր սովետական դպրոցների ստեղծումը, գրքերի և թերթերի հրատարակումը, գտնվում էր ընկեր Ստալինի ուշադրության կենտրոնում։*

*1918—1919 թվականները ծանր տարիներ էին մեր երկրի համար։ Անգլիական և ամերիկյան իմպերիալիստները տասնչորս պետություն էին հանել երիտասարդ սովետական ռեսպուբլիկայի դեմ։ Նրանք ուզում էին վերջ դնել աշխարհի առաջին Սոցիալիստական պետությանը։ Սակայն ինտերվենտները ջախջախվեցին և դուրս շպրտվեցին մեր երկրի սահմաններից։*

*Ահա այդ ծանր օրերին քաղաքացիական պատերազմի կրակի ու ծխի մեջ, Լենինը և Ստալինը ժամանակ էին գտնում զբաղվելու Ռուսաստանի ժողովուրդների, այդ թվում նաև հայ ժողովրդի բախտով։ Նրանք դեռ այն օրերին մտածում էին, թե ինչպես անեն, որ ամեն մի ազգության աշխատավորի երեխա կարողանա իր մայրենի լեզվով սովորել, կրթություն ստանալ։*

*Լենինը և Ստալինը հայկական ինստիտուտը համարում էին ժողովրդական կրթության այն բազան, որի օրինակով պետք է սկսվեր ժողովրդական կրթության գործը Սովետական Հայաստանում։*

*Վաղուց գոյություն ուներ Լազարյան ճեմարանը։ Դա մի դպրոց էր, որտեղ միայն սովորում էին հարուստ հայերի և հոգևորականների զավակները։ Աշխատավորների երեխաները չէին էլ երազում այնտեղ սովորելու մասին։ Նրանք դրա համար ո՛չ փող ունեին, ո՛չ հարստություն։*



*1919 թվականի մարտի չորսին Վլադիմիր Իլյիչ Լենինը մի դեկրետ ստորագրեց, որը վերաբերում էր Լազարյան ճեմարանին։ Այդ օրվանից Լազարյան ճեմարանն սկսեց կոչվել «Մոսկվայի հայկական ինստիտուտ»։ Լենինի ստորագրած դեկրետում ասված էր, որ այդ ինստիտուտում պետք է սովորեն հայ աշխատավորների երեխաները։ Ինստիտուտի բոլոր ծախսերը պետությունն իր վրա վերցրեց։*

*Հայկական ինստիտուտի մեջ մտնում էին տարրական ու միջնակարգ դպրոցները և բարձրագույն դպրոցի երկու ֆակուլտետ։*

*Մոսկվայի հայկական ինստիտուտը եղավ*

հայկական սովետական առաջին դպրոցը, որը բացվեց Լենինի և Ստալինի մեծ հոգատարության շնորհիվ։

Այդ դպրոցի առաջին աշակերտների մի մասը թյուրքական կոտորածներից փախած և Ռուսաստանում ապաստան գտած հայ որբեր էին ու գաղթականներ, որոնք մեկ-մեկ հավաքագրվում էին Ռուսաստանի հայաբնակ քաղաքներից և ուղարկվում Մոսկվա։ Նրանք այնտեղ ստանում էին ձրի հագուստ, սնունդ և գրենական պիտույքներ։ Մյուսները հայ բանվորների երեխաներ էին, որոնք մինչ այդ երազում էին կրթության մասին։

Հայ ժողովրդի ազատարարներ Լենինն ու Ստալինը հայ աշխատավորների երազը իրականություն դարձրին։ Հետագայում նման դպրոցներ բացվեցին նաև Ռուսաստանի հայաբնակ շատ քաղաքներում։ Իսկ երբ ռուս ժողովրդի օգնությամբ Հայաստանը սովետական դարձավ, մենք արդեն ունեինք մեր սովետական հայկական դպրոցները, որոնց օրինակով էլ Հայաստանում բացվեցին հազարավոր ուսումնարաններ ու դպրոցներ։

## ԼԵՆԻՆԻ—ՍՏԱԼԻՆԻ ՍԵՆՅԱԿՈՒՄ

Երեխաները հափշտակված նայում էին պատերից կախված գունանկարներին ու լուսանկարներին, պատվանդաններին դրված քանդակներին ու մակետներին։ Հանդիսավոր լռությունը խախտում է միայն ընկեր Բարսամյանի ձայնը։

— 1870 թվականի ապրիլի քսաներկուսին Սիմբիրսկ քաղաքի այս տանն է ծնվել աշխատավորության մեծ առաջնորդ Լենինը…

Նա ցույց է տալիս պատից փակցրած ռուսական սովորական մի տան լուսանկար։ Երեխաները աչք չեն հեռացնում նրանից։ Նրա կողքին Լենինի ծնողների՝ Իլյա Նիկոլաևիչի և Մարիա Ալեքսանդրովնայի լուսանկարներն են, իսկ քիչ հեռու՝ չորս տարեկան Լենինի լուսանկարը։ Սպիտակ վերնաշապիկը հագին նա կանգնած է հենված աթոռին դրված գրքերի վրա։ Մյուս ձեռքը դրած է գոտկին։ Լենինի այդ սովորությունը մնաց մինչև կյանքի վերջը։

Սենյակի կենտրոնում դրված է բրոնզյա մի արձան. պատանի Լենինն է։ Նստած մի կոճղի վրա նա գիրք է կարդում։ Կողքին դրված է գրքերի մի կույտ։

Այսպես փոքրիկ Վոլոդյան դեռ մանկության տարիներին սիրեց գիրքը, գիտելիքների աղբյուրը։

1879 թվականին, ինը տարեկան Լենինը մտնում է Սիմբիրսկի գիմնազիան սովորելու։ Այնտեղ էր սովորում նաև նրա ավագ եղբայրը՝ Ալեքսանդրը։ Ավարտելով գիմնազիան, Ալեքսանդր Ուլյանովը գնում է Պետերբուրգ (այժմ Լենինգրադ)՝ համալսարանում սովորելու։ Այստեղ նա մասնակցում է Ալեքսանդր երրորդ ցարի դեմ կատարվող մահափորձին։

1887 թվականի մայիսի 20-ին ցարական ժանդարմները նրան մահապատժի են ենթարկում։ Այդ ժամանակ Վոլոդյան սովորում էր գիմնազիայի վերջին դասարանում։ Եղբոր մահվան լուրը մեծ վիշտ պատճառեց ընտանիքին։

Ահա մի լուսանկար պատկերում է այն ժամը, երբ ստացվել է Ալեքսանդրի մահվան լուրը։ Վճռական արտահայտությամբ կանգնած է Վոլոդյան տխրությամբ լի մոր կողքին։

— Ո՛չ, մենք այդ ուղիով չենք գնա, մենք կգնանք այլ ուղիով,— ասել է Լենինը եղբոր մահվան լուրն ստանալիս։

Այդ ուղին Լենինը գտավ և բանվոր դասակարգին առաջնորդեց այդ միակ ճիշտ ճանապարհով և ազատություն բերեց ժողովուրդներին։

Երևանի Պիոներների պալատի Լենինի—Ստալինի սենյակի ղեկավար ընկեր Բարսամյանը երեխաներին պատմում է, թե որքա՞ն լավ էր սովորում Վոլոդյան գիմնազիայում։ Ահա և նրա հասունության վկայականն ու ոսկե մեդալը, որոնց արժանացել է ամենաառաջավոր աշակերտը։

Երեխաներն ուշադրությամբ նայում են



Երևանի Պիոներների պալատի նկարներից. «Լենինը ուսանողական ցույցի ժամանակ»:

*վկայականում նշված թվանշաններին: Բոլորը հինգ են: Երեխաները մի պահ լռում են: Կարծես յուրաքանչյուրն իր մտքում ասում է. «Ես կկատարեմ Իլյիչի պատգամը, կսովորեմ լավ և կլինեմ արժանավոր լենինյան»:*

*Ահա մի ուրիշ նկար. Լենինը Կազանի համալսարանի ուսանողների հետ գտնվում է արգելված ուսանողական հավաքույթում: Նա լեցուն է տիրող կարգերի դեմ պայքարելու վառ տենչով: Դա 17 տարեկան պատանու առաջին «մարտական մկրտությունն է»: Սկսվում են պայքարի տարիները: Բանտարկություն, աքսոր, հալածանքներ: Սակայն ցարական դահիճներն անզոր գտնվեցին ռևոլյուցիայի հանճարի կամքը կոտրելու համար:*

*Վ. Ի. Լենինը, որի անմահ անունը շողում է կոմունիզմի հաղթական դրոշի վրա, սիրելի Ստալինի հետ միասին ստեղծեցին առաջին սոցիալիստական պետությունը: Այսօր մեր մեծ սոցիալիստական հայրենիքը համարձակորեն առաջ է ընթանում դեպի կոմունիզմի լուսավոր գագաթները: Կոմունիզմը կհաղթանակի, որովհետև նրա դրոշը գտնըվում է վստահելի ձեռքերում, պարտիայի ձեռքերում:*

*Պիոներները հուզված երկար ժամանակ դիտում են նկարներն ու մակետները: Ահա նրանք կանգնած են այն պատի առաջ, որի վրա կախված է մի պաստառ: Պաստառի վրա ոսկե տառերով գրված են Ի. Վ. Ստալինի հետևյալ խոսքերը.*

«Հիշեցե՛ք, սիրեցե՛ք, ուսումնասիրեցե՛ք Իլյիչին, մեր ուսուցչին, մեր առաջնորդին»:

*Այդ խոսքերը դրոշմվում են յուրաքանչյուրի սրտում և ամեն մեկն իր մտքում երդվում*



Լենինի տուն-թանգարանն Ուլյանովսկում:

*է մինչև վերջ կատարել մեծ Ստալինի այդ իմաստուն պատգամը:*

*Վ. ԲԱԲԱԽԱՆՅԱՆ*

# ՋՈԿԱՏԻ ԱՌԱՋ

Ա. ՍԵԿՈՅԱՆ

Նկ. Կ. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

## 1

Նստած պատուհանի առջև՝ Լևոնը հրապուրված նայում էր դուրս։ Հախուռն թափով իջնում էր ձյունը։ Ամբողջ ձմռանն այդպիսի առատ ձյուն չէր եկել։ Քամին խուշոր փաթիլները խառնում էր միմյանց, ապա ալիքելով լցնում պատուհանների գոգը, շքամուտքերի մեջ… Դռնապանի մաքրած մայթի վրա անմիջապես էլ կարելի էր հեշտությամբ սահել։ Ծառերի տերևազուրկ ճյուղերն ասես դարձել էին ծաղկած ծիրանիներ։

Պողոտան լիքն էր երեխաներով։ Նրանցից մեծահասակները մի հսկայական բլուր էին պատրաստում։ «Ա՛յ թե սահնակը կըգնար դրա վրայով»,— կլանված երևակայում էր Լևոնը։ Նա հազիվ էր զսպում իրեն, որպեսզի չհագնի չմուշկներն ու դուրս չթռչի։ Բայց դրա փոխարեն մի խորը հոգոց արձակեց ու նայեց առջևը դրված ալբոմին։ Այդ գործը նա երեկ պետք է ավարտած լիներ։ Ահա թե ինչ է նշանակում անընդհատ հետաձգել աշխատանքը։ Եվ ստիպված է տանը նստել այս եղանակին… Այժմ երևի Հենրիկը, Շավարշն ու Նորիկը խաղում են ուզածի չափ։ Նրանք հենց առաջին օրն ավարտեցին իրենց գործն ալբոմի հետ։ «Հանձնարարությունն անմիջապես պետք է կատարել»— միշտ ասում էր Վազգենը՝ ջոկխորհրդի նախագահը։ Դե՜, Լևոնն ի՞նչ իմանար, որ հենց վերջին օրը այդպիսի ձյուն էր գալու…

Այնուհանդերձ պետք էր հասցնել. չէ՞ որ առավոտյան ջոկատին էր հանձնելու այն ալբոմը, որը մարտի ութի առթիվ նվիրելու էին իրենց սիրելի դաստիարակչուհուն…

Լևոնը ձեռքն առավ մատիտը, բայց դըրսից այնպիսի միահամուռ ճիչեր լսվեցին, որ նա հայացքը վեր բարձրացրեց. արդեն պատրաստի բլրի վրայից սահում էին տղաները։ Յուրաքանչյուր սահնակի վրա մի քանի երեխա էին լցվում։ Այնպիսի թափով էին իջնում նրանք, որ գնում էին հեռո՜ւ-հեռո՜ւ։ Ահա և Համոն ու Պետիկը՝ իրենց փողոցի հայտնի չմշկավարողները։ Բայց ո՛չ, բավակա՛ն է։ Եվ Լևոնը վճռականապես կտրվելով դրսից՝ սկսեց նկարել։ Կամք չունի, ի՞նչ է։ Պետք է հասցնել։

— Լևի՜կ… Լևի՜կ,— պատուհանի տակից կանչեցին տղաները։— Տես ի՜նչ ձյուն է։

Առանց տղաներին պատասխանելու նա աչքի տակով նայեց դուրս։ Պետիկը երկու անգամ պտույտ գործեց ու վեր թռչելով՝ ամուր կանգնեց չմուշկների վրա։ Նա հաճախ էր պարծենում տղաների մոտ, որ ինքն իբր հաղթում է Լևոնին։ Ինչպե՜ս նա հիմա կարող էր ցույց տալ, թե ով է ավելի հմուտ…

— Չես գալի՞ս,— նորից ճչաց Պետիկը և այս անգամ երեք պտույտ տվեց չմուշկների վրա։ Այս ձևը հավանաբար նոր էր սովորել և եկել էր զարմացնելու։— Սպասո՜ւմ ենք…

Լևոնը կարողացավ միայն գլուխը բացասաբար շարժել. դե, ուժ չկար բառերով մերժել։

— Էլ ձյուն չի գա՜,— բացագանչում էր Պետիկը և շարունակում պարծենկոտ պըտույտներ գործել։

Լևոնն, իհարկե, լավ գիտեր, որ հենց երեկոյան Պետիկը պարծենալու էր. բայց գործը հո կիսատ չէր թողնելու։ Ինքն ինչպե՞ս էր կանգնելու ջոկատի առաջ, ի՞նչ կասեին իրեն. «Չէիր կարող՝ չվերցնեիր պիոներական հանձնարարությունը»։ Եվ նա որոշեց ոչ մի ուշադրություն չդարձնել տղաների վրա։ «Էլ ձյուն չի գա, ինչո՞ւ չի գա… կամ թեկուզ չգա»,— մտածում էր նա ու ոգևորված նկարում։

Սակայն հազիվ էր մի քանի րոպե անցել, երբ չմուշկները հատակին թխթխկացնելով՝ ներս մտավ Պետիկը։

— Լսիր, ի՞նչ է պատահել քեզ։ Դասերդ չե՞ս սովորել։

— Սովորել եմ։

— Իսկ ինչո՞ւ չես գալիս։

— Գործ ունեմ… ջոկատն է հանձնարարել։

— Ե՞րբ ես տալու։ Առավոտյա՞ն։ Ը՜, դեռ ինչքան ժամանակ կա՜…

— Չեմ հասցնի։

— Կհասցնե՛ս։

— Իսկ եթե չհասցնե՞մ։

— Հետո ինչ... հիվանդ կար տանը,— հուշեց Պետիկը։

— Խաբե՞լ,— արդեն լրջորեն բարկացավ Լևոնը։— Ո՛չ, չեմ գալիս։



— Ինչո՞ւ խաբել... Եթե մի քառորդ ժամ դուրս գաս, գործդ կտուժի՞։

— Եթե առավոտյան հանձնելու չլիներ...

— Իսկ ես միայն տասնհինգ րոպեով եմ ասում...

— Դե՛, ես էլ... մտածում եմ...

Լևոնը կամաց-կամաց ելավ տեղից։ Նրա հայացքն ընկավ մահճակալի առջև թողած չմուշկներին։ Պետիկն անմիջապես դրանք ավեց Լևոնին։

— Նայի՛ր, ձյունն ավելի շատացավ,— հիացած բացականչեց Պետիկը։— Մեր դըպրոցի տղաներից էլ եկան...

Չհամարձակվելով ալբոմի կողմը նայել՝ նրա հետ դուրս ելավ նաև Լևոնը։

2

Ձյունը գնալով ավելի էր առատանում։ Տասը քայլի վրա ոչինչ չէր երևում։ Դա ավելի էր ոգևորում երեխաներին։ Փողոցով անցնում էին մի խումբ պատանի դահուկավորներ. ըստ երևույթին նրանք դուրս էին գալու քաղաքից։ Մի քանի փոքրիկներ ձնե մարդ էին պատրաստում ընդարձակ բակում։ Ձյան խոշոր փաթիլները նստում էին նրանց թարթիչներին, ջերմությունից վարդագունած այտերին և անմիջապես հալվելով, ցողի նման փայլփլում էին երկար ժամանակ։ Լևոնի ուսերին ոչ թե փաթիլներ, այլ ձյան մի շերտ էր նստել։ Հաճույքից փայլում էին նրա խոշոր աչքերը։ Ճակատը ծածկվել էր քրտինքի մանրահատ կաթիլներով, իսկ ոտքերն ասես նոր էին բացվում։

— Դե հիմա հասիր ինձ,— բացականչում էր նա և սահելիս պտույտներ գործում։ Այսպես կարո՞ղ ես, իսկ այսքան հեռու կարո՞ղ ես թռչել, հապա փորձիր...

Մոռացած ամեն ինչ, տղաներն ո՞վ գիտե քանիերո՞րդ անգամ էին անցել պողոտայի մի ծայրից մյուսը։ Նրանց վազքը գնալով ավե՜լի թեթև ու հաճելի էր դառնում։ Երանի այդպես խաղային անվերջ-անվերջ... Սակայն թեթև րոպեների ետևից աննկատելի սահում էին ժամերը։ Զարմանալի բան. ժամանակն էլ ասես չմուշկներ էր հագել.

...Հանկարծ Լևոնը նկատեց, որ ձյան փաթիլներն սկսել էին պարել արդեն վառված լապտերների շուրջը։ Իսկ ճերմակ գդակներ հագած գնդաձև լուսամփոփներն ասես նախատող հայացքով իրեն էին նայում. «Ամոթ չէ՞, դու քույրիկիդ էլ չես բերել մորաքրոջդ տանից...»։

— Նորից բարձրանանք,— հևալով առաջարկեց Պետիկը։

Լևոնի հայացքը չէր պոկվում լուսամփոփից։

— Ես տուն եմ գնում,— կտրուկ պատասխանեց Լևոնն ու շրջվեց։

— Մի անգամ էլ։

— Բավական է,— անկախ իրենից բղավեց Լևոնը ու սլացավ դեպի տուն։

Այ քեզ բան, ինչպե՞ս չէր հիշել քրոջը։ Նրան բերելու համար պետք էր առնվազն մեկ ժամ, հապա ալբոմը... Նա մեկ որոշեց չգնալ մորաքրոջ տուն, թող մի անգամ էլ մայրը գնար։ Բայց երբ ներս մտնելով հանդիպեց մայրիկին, որը նոր էր վերադարձել

աշխատանքից և հիմա էլ ճաշ էր պատրաստում, խղճաց։

— Մայրի՛կ, գնում եմ Լիլիկին բերելու,— ասաց տղան և անմիջապես ետ դարձավ։

Մայրը զարմացած նայեց նրա ետևից, ապա օրորեց գլուխը։

Երբ նա փոքր քրոջ հետ դուրս եկավ մորաքրոջ տանից, բոլորովին մութն էր արդեն։

— Վա՜յ, ինչքա՜ն շատ ձյուն է եկել,— ուրախ ճչաց Լիլիկը,— ցած իջեցրու, ուզում եմ սղղալ...

— Այսօր չէ, հա՞, Լիլի՛կ ջան, վաղն այնքան կսղղացնեմ քեզ...

— Չե՛մ, չե՛մ, չե՛մ,— սկսեց թնկթնկալ երեխան,— մի անգամ սղղամ... մի անգամ...

Տեսնելով, որ երեխան աղմուկ է բարձրացնում՝ Լևոնը ցած իջեցրեց նրան։

— Դե սղղա, սղղա՝ տեսնեմ,— բարկացավ նա և, շրթունքները կրծոտելով, սկսեց հետևել քրոջը։ Քույրը, որ ընդամենը երեք տարեկան էր, կանգնում էր մի ոտքի վրա և մյուսը սահեցնում առաջ, նորից էր կանգնում նույն ոտքի վրա և էլի մյուսը սահեցնում առաջ։

— Սղղո՜ւմ եմ,— բացագանչում էր նա։

— Դե, բավակա՛ն է,— ընդհատեց Լևոնը և ցանկացավ գիրկն առնել քրոջը։ Սա ձայնը բարձրացրեց։

— Էլի՛... էլի՛ եմ ուզո՜ւմ...

Լևոնը ձեռքը բարձրացրեց, որպեսզի խփի քրոջը, բայց անհարմար զգաց և ուշադրություն չդարձնելով նրա աղաչանքին, գրկեց ու խոշոր քայլերով շարունակեց ճամփան։

3

Երբ ներս մտան, մայրը սեղան էր պատրաստում։ Նրան չվրդովելու համար Լևոնը չկարողացավ հրաժարվել ճաշից։ Ուտելիս նա մտասույզ էր. ինչպե՞ս պետք է հասցներ նկարները։ Բայց փորձեց հանգստացնել իրեն. ինքը վարժ էր նկարելու մեջ, գուցե կարողանար արագ նկարել։

— Ավարտե՞լ ես նկարներդ,— հարցրեց մայրը, երբ տղան մոտենում էր գրասեղանին։— Ո՞չ։ Հապա ի՞նչ ես արել ամբողջ օրը...

Լևոնը մնացել էր գլխիկոր կանգնած։

— Վաղն ի՞նչ ես պատասխանելու ընկերներիդ...

— Այսօր կհասցնեմ։

— Չես կարող։ Հիմա ժամը ինն է, ժամը տասին քնելու ես։

— Այսօր ուշ կքնեմ...

— Քիչ հետո հայրդ տուն է գալու։ Լավ գիտես, որ նա թույլ չի տա ժամը տասից հետո նստել։ Ռեժիմ ունես, նայի՛ր։ Ձևականության համա՞ր ես փակցրել պատին...

— Միայն այսօր... այլևս չեմ...

— Միայն կես ժամ։ Պա՞րզ է։

Կուլ տալով արցունքները՝ Լևոնը ձեռքն առավ ալբոմը։ Ավարտելու համար հարկավոր էր առնվազն երեք ժամ։ Ի՞նչ անել։ Կարելի՞ էր, արդյոք խնամքով չնկարել, չէ՞ որ դա նվեր էր լինելու... Հապա ե՞րբ նկարել։ Հիմա ուր որ է ներս կմտներ հայրը...

Նա գտավ ելքը. ճիշտ ժամին կպառկեր, բայց չէր քնի։ Կսպասեր, մինչև ծնողները քնեին, և այն ժամանակ զգույշ վեր կկենար ու կշարունակեր...

Այդպես էլ արեց։ Նոր էր անկողին մտել, երբ եկավ հայրը։ Վերմակը քաշած մինչև աչքերը, կիսափակ թարթիչների արանքից տղան հետևում էր նրանց։ Այդ օրն ինչ-որ կամաց էին շարժվում տանը։ Հայրիկը նախ շատ դանդաղ ընթրեց, ապա ինչ-որ երկար բան պատմեց մայրիկին, հետո լրագիրը ծայրից ծայր կարդաց, նորից զրուցեցին։ Ի՞նչ կար այդ ժամին այդպես հանգիստ պատմելու, չէր հասկանում տղան։ Նա աշխատում էր այնպես նայել, որ չլինի թե փակվեին աչքերը։

Եղավ մի պահ, երբ նա ոչ միայն շշուկ չէր լսում, իսկ մայրիկն ասես օդի միջով էր քայլում։ Քայլում էր, թե՞ սահում, Լևոնը չէր կարողանում որոշել։

Տղան ինքն էլ չզգաց, թե ինչպես քնեց։ Քնեց և այսպիսի մի երազ տեսավ։

...Անտառ է. ձմեռ։ Բարակիրան ծառերն այնպես են ծանրացել ձյունից, որ ահա ուր-որ է կփշրվեն։ Զմշկում է Լևոնը, բայց չի կարողանում առաջ գնալ, որովհետև մինչև ծնկները խրվում է փափուկ ձյան մեջ։ Նա թևի տակ տանում է կիսավարտ ալբոմը։ Ոչ ոք չկա անտառում, իսկ ո՞ւր է գնում

ինքը։ Բայց ահա մի հսկա կաղնու տակ նստել են տասներկու եղբայր։ «Հա՜, տասներկու ամիսներն են սրանք»— անցնում է Լևոնի մտքով։ Նա նայում է ամենամեծին և սպասում. սա շրջվում է դեպի նա։

— Այդ ո՞ւր ես գնում,— հարցնում է նա ծանոթ ձայնով։— Բերի՞ր ալբոմը։

Բայց ոչ, դրանք ոչ թե տասներկու ամիսներն են, այլ իր դասընկերները։ Նրանք հավանաբար ընկել են հեքիաթի մեջ...

— Այս ի՞նչ է,— բարկանում է ճերմակ մորուքավորը՝ այսինքն Վազգենը։ Զայրույթից ցնցվում է նրա կեղծ մորուքը։— Ինչո՞ւ չես ավարտել նկարները. չէ՞ որ ջոկատի առջև վերցրիր այդ պարտավորությունը։

Լևոնը մնում է կանգնած։

— Ա՜յ, հիմա պատասխան կտաս,— ասում է մի ձայն։

Այդ պահին միմյանցից բաժանվում են ձյունածածկ ծառերը, և բացվող ճանապարհով դեպի իրենց է առաջանում ճերմակ ու շքեղ շրջազգեստով ինչ-որ մեկը։ Նրա հայացքն այնքա՜ն ծանոթ է, այնքա՜ն բարի... այդ կիսով չափ ճերմակած մազերը...

Շավարշը նրան է մեկնում ալբոմը։ Հեքիաթային կինը շրջում է դեմքը և ձեռքի փայտիկով ցույց տալիս Լևոնին։

— Նա չի ավարտել նկարները,— խոսում է նա։ Այդպիսի ձայնով խոսում էր միայն ընկեր Սինանյանը։ Դե, իհարկե, նա է, իրենց դասղեկը... Տղաները հարգանքով յառում են նրան։

— Ես կարո՞ղ եմ ընդունել այդպիսի մի նվեր...

Երբ Լևոնը բարձրացնում է հայացքը, ուսուցչուհին չի երևում այլևս։

— Վերցրու քո ալբոմը,— ասում է տղաներից մեկը և դուռը ծածկում նրա երեսին։ Դռան վրա գրված է «IV ա» դասարան...

Այդ պահին, չգիտես որտեղից, հայտնվում են Համոն ու Պետիկը։

— Գնա՞նք պողոտայի ծայրը,— ասում է Պետիկը խորամանկ ժպիտով։— Այնպիսի նոր ձևեր եմ սովորե՜լ...

— Հեռացի՛ր,— ճչում է Լևոնը,— այլևս իմ ընկերները չեք... ձեր պատճառով...

— Ինչո՞ւ մեր պատճառով, ասա խնդրեմ։ Եթե դու պարտաճանաչ պիոներ լինեիր, գործդ չէիր թողնի...

Նա ուզում է փախչել նրանից, բայց... վեր է թռչում։

Զգալով իրեն անկողնում, Լևոնը խորը շունչ առավ։ Մութն էր։ Ի՜նչ լավ է. նշանակում է կհասցնի։ Զգույշ վեր կենալով տեղից՝ նա հագնվեց և անցավ մյուս սենյակը։ Առավոտյան ժամը 5-ն էր։

## 4

Տղաները Լևոնին դիմավորեցին ուրախ բացականչություններով։

— Ի՜նչ լավ հասցրիր...

— Ուշացար՝ վախեցանք...

— Լավ է,— ասաց Վազգենը։

Լևոնը նայում էր մեկ տղաներին, մեկ՝ իր նկարներին։ Արդարև, նա խնամքով էր մոտեցել յուրաքանչյուր նկարին։ Բայց սրտի խորքում զգում էր, որ ավելի լավ կստացվեր, եթե գիշերով, կիսաքուն չնկարեր։ Իսկ



Վազգենն ասաց «լավ է»։ Լևոնը գիտեր, որ Վազգենը կասեր «հիանալի է», եթե իսկապես նկարը նրան շատ դուր գար։ Ուրեմն նկարն այնպես չի ստացվել, ինչպես հարկն էր։ Լևոնի սիրտը ճմլվում էր, ինչ-որ ծան-

*ռություն էր զգում։ Ուրեմն ինքը հանձնարարությունը կատարել է միայն ձևականորեն... Եվ որքան էլ մյուսները ուրախ լինեին, Լևոնը տխուր էր։*

*Լսելով զանգի ձայնը, տղաները վազեցին իրենց տեղերը։*

*— Ընկե՛ր Սինանյանը...*

*Մի քայլ անց շեմքում երևաց կիսով չափ ճերմակած մազերով, բայց տակավին երիտասարդ մի կին։ Նա իրեն սովոր մեղմ ժպիտով ողջունեց դասարանին և առաջացավ։*

*— Ի՞նչ է, Վազգե՛ն, բա՞ն էիր ուզում ասել,— նկատելով ջոկխորհրդի նախագահի անհանգստությունը՝ հարցրեց ուսուցչուհին։*

*Խրախուսվելով ընկերների հայացքից, Վազգենը մոտեցավ և ուսուցչուհուն մեկնեց ալբոմը։*

*— Թույլ տվեք մեր ջոկատի կողմից շնորհավորել ձեր տոնը,— շիկնելով ասաց նա։*

*Բոլորն անհամբեր սպասում էին։ Բացելով ալբոմը՝ ուսուցչուհին հետաքրքրությամբ դիտեց այն։*

*— Շնորհակալություն, սիրելի՛ երեխաներ...սա շատ թանկ նվեր է ինձ համար...— այս ասելով ուսուցչուհին նայեց Լևոնին։*

*Սաստիկ ազդված՝ Լևոնը չկարողացավ դիմանալ դաստիարակչուհու բարի հայացքին և խոնարհեց աչքերը։ Մի՞թե ինքն իրոք կարող էր բաց ճակատով կանգնել ջոկատի առջև...*

*Մինչ դաստիարակչուհին գովում էր և մյուս տղաներին, Լևոնը հայացքը թեքեց դեպի պատուհանը։*

*Դրսում շարունակվում էր տեղալ փափուկ ու հեքիաթային ձյունը։*

## ԳԱՐՆԱՆԱՅԻՆ

*ԳՐ. ՁԱԼԻԿՅԱՆ*

Ձյունը թողած քաղաքը մեր,
Ելավ բարձր լեռներն ի վեր,
Եվ արևը հրակարմիր
Փռեց պայծառ շողերը իր.
Մանուշակը բացվեց կրկին,
Աչքով արեց ձնծաղիկին,
Բողբոջեցին ծաղիկ ու ծառ,
Ծլվլացին ծիտ ու ծիծառ:
Օդը լցվեց բույրով գարնան,
Բացվեց և՛ դուռ, և՛ պատուհան:
Հանած մուշտակ ու վերարկու
Հավաքվեցինք նորից բակում.
Թողած ձմռան խաղերը մեր
Մենք ցանեցինք ծաղկի սերմեր,
Դալար շյուղեր մենք տնկեցինք,
Խաղադաշտը հարդարեցինք,
Որ դասերից երբ տուն դառնանք
Բակում խաղանք ու պարմանանք:

## ՎԵՐԱԴԱՐՁԵՔ ԹՌՉՈՒՆՆԵՐ

*Ս. ԽԱՐԱՁՅԱՆ*

Նորից գարուն եկավ տաք,
Կանաչեցին դաշտ ու լեռ,
Մեր երկնքով կապուտակ
Վերադարձեք, թռչուննե՛ր:
Մենք, բները ձեր այն հին
Դեռ պահել ենք, պահպանել,
Եվ դպրոցի տանիքին
Նոր-նոր բներ ենք շինել:
Գուցե լսել եք անվերջ
Օտար երկրում տխուր երգ,
Ու տեսել եք մահամերձ
Մանուկներին որբ ու մերկ:
Հիմա եկեք դուք ուրախ
Մեր աշխարհը ծաղկազարդ,
Մտեք պարտեզ ու պուրակ,
Երգեք երգը ձեր զվարթ:
Մեր թևավոր ընկերնե՛ր,
Ինչո՞ւ էիք թողել մեզ,
Հավատացեք՝ այս ձմեռ
Տաք է եղել գարնան պես:

ՊԻՈՆԵՐԱԿԱՆ դրուժիններում և ջոկատներում

# ԵՐԿՐՈՐԴ ԴԱՍԱՐԱՆՈՒՄ

## 1

Դպրոցի միջանցքներում, կաբինետներում, դասարաններում և բակում մի առանձին աշխուժություն էր տիրում։

Վերջին քառորդին միշտ էլ այդպես է լինում։ Քննությունների և տարեվերջի մոտիկությունը միշտ էլ որևէ ձևով արտահայտվում է։ Ահա բարձր դասարանցիներից շատերը բակում ու միջանցքներում շրջում են դասագրքերով, հաճախ թերթում տետրերը, բարձրաձայն թեորեմաներ կրկնում։ Նրանք շրջում կամ հավաքվում են մի որևէ տեղ խումբ-խումբ։ Հաճախ վիճում են, աղմկում, կատակում, բայց այդ կատակները նույնիսկ մի տեսակ լուրջ են լինում։

Ուրիշ բան է ցածր դասարաններում։ Այստեղ հանգիստ է։

Երեխաները զգույշ, անաղմուկ մտնում են դասարան և դասերից հետո էլ նույնքան անաղմուկ շարքով ուղևորվում են տուն։

Այդպես հանգիստ ու անվրդով էր կյանքը նաև Երևանի Շահումյանի անվան դպրոցի երկրորդ դասարանում։ Բայց ահա մի օր դասարան է մտնում փոքրիկ, խարտիշահեր Սոնիկը և մատը դնելով շրթունքներին խորհրդավոր ասում.

— Իսկ մենք նույնպես քննություն պիտի տանք։

Լուրը հանկարծակի էր։ Մի րոպեում շրջապատում են նրան.

— Ո՞րտեղից իմացար...

— Ո՞վ ասաց.

— Չի կարող պատահել։

Վրա են տալիս ամեն կողմից և Սոնիկը շտապելով, բառերի կեսը կուլ տալով պատմում է, թե ինչպես բարձր դասարանի աշակերտներից մեկը միջանցքում ասել է. «Բոլորը քննություն պետք է տան»։

— Ազնի՞վ պիոներական,— պնդում է Սոնիկը,— ես հենց նոր լսեցի։ Նա ասաց՝ «բոլորը»։

Սոնիկի պատմածը մեծ տպավորություն թողեց։ Դե Սոնիկը ե՞րբ ճիշտ չէր ասել, որ հիմա չհավատային նրան։ Լռությունը խզեց Արմինեն, որ մինչ այդ լուռ էր։

— Այդ դեռ ոչինչ չի նշանակում,— ասաց Արմինեն,— գուցե նա իրենց դասարանի մասին է ասել միայն։— Իսկապես։ Ո՞վ ասաց, թե իրենց էլ է վերաբերում այդ խոսքը։ Չէ՞ որ «բոլորը» բառը կարող է վերաբերվել նաև միայն մի դասարանի։ Ինչպե՞ս այդ մասին չէին մտածել։ Իսկ Էմման դրանից խրախուսվելով ասաց.

— Մենք քննություն չենք տալու։ Մենք ուղղակի միանգամից կփոխադրվենք երրորդ դասարան, հենց այնպես, առանց քննության։

Եվ նկատելով դռների մոտ կանգնած ընկեր Բոյախչյանին՝ շտապեց իր տեղը։ Բոլորը հետևեցին նրան։ Խոսակցությամբ տարված երեխաները չէին նկատել, թե ինչպես էր զանգը խփել, ինչպես էր ընկեր Բոյախչյանը ներս մտել։

## 2

Դասերից հետո ընկեր Բոյախչյանն ասաց, որ քննություններ չեն լինելու։ Բայց երեխաներն իմացան նաև, որ, ինչպես Էմման էր ասում, չեն էլ փոխադրվելու «հենց այնպես», «միանգամից»։ Հաջորդ դասարան կփոխադրվեն նրանք, ովքեր լավ են սովորել, լավ են յուրացրել անցածը։

— Այնպես անենք, սիրելի երեխանե՛ր,— ասաց ընկեր Բոյախչյանը,— որ մեր դասարանից ոչ ոք չմնա։

«Ո՛չ ոք չմնա»։ Սիրելի ուսուցչուհու այս խոսքը դասարանի համար դարձավ լոզունգ։ Այդ լոզունգն իրականացնելու համար սկսեց պայքարել պիոներական օղակը։

Ընդամենը երեք ամիս էր անցել այն ուրախալի օրից, երբ տոնածառի շուրջը երկրորդ դասարանից տասներկու հոգու ընդունեցին պիոներական կազմակերպության

մեջ: Այդ օրվանից դասարանում շատ բան փոխվեց: Երևացին կարմիր վզկապավորները: Ճիշտ է, նրանք առաջվա երեխաներն էին, բայց սկսեցին շատ բանով տարբերվել մյուսներից: Չէ՞ որ նրանք արդեն պիոներներ էին, իսկ պիոները պետք է օրինակ ծառայի մյուսներին:

— Այնպես անենք, որ ո՛չ ոք չմնա,— ասում է ընկեր Բոյախչյանը, ո՛չ ոք «երկուս» չստանա: Պիոներները որոշեցին չստանալ նաև «երեք», պայքարել «չորսի» և «հինգի» համար: Պիոներներին հետևեցին նաև մյուս աշակերտուհիները: Նրանք սկսեցին պարապել, պատրաստվել տարեվերջին:

Էմման վատ ձեռագիր ունի: Այդ մասին բոլորը գիտեն: Չէ՞ որ գրատախտակի վրա հաճախ են տեսնում նրա ծուռտիկ տառերը: Պետք է լավացնել ձեռագիրը, որոշեց նա: Ինչպե՞ս կարելի է երրորդ դասարան փոխադրվել վատ ձեռագրով:

Եվ Էմման սկսեց պարապել: Ամեն օր նա լրացուցիչ արտագրություն է անում: Իսկ ձեռագիրը դրանից սկսում է լավանալ: Այդ արդեն նկատում են բոլորը: Արտագրությամբ է զբաղվում նաև Արուսյակը: Նա լավ ձեռագիր ունի, բայց երբեմն տառասխալներ է անում: Արտագրությունը կօգնի վերացնել տառասխալները:

Լուիզան պարապում է ռուսերենից: Պետք է ավելի լավ իմանալ ռևոլյուցիայի լեզուն, Լենինի և Ստալինի լեզուն: Այդ մասին միշտ ասում է ընկեր Բոյախչյանը: Լուիզան ռուսերեն փոքրիկ գրքեր է կարդում: Նա արդեն կարդացել է «Կարմիր ծաղիկներ», «Զոյա», «Քամին գետակի վրա» գրքերը և դեռ շատ կկարդա մինչև տարեվերջ:

Առանձնապես համառորեն է պարապում Ջուլիետան: Նա անցյալ տարի շատ «երեքներ» ուներ: Այս տարի «երեքները» վերացան, բայց նա ուզում է միայն «հինգ» ստանալ և դրա համար էլ պարապում է: Բոլորը գիտեն, որ Ջուլիետան իր նպատակին կհասնի: Դրա համար միայն համառություն է պետք, կամք:

«Գիրքը ձեր լավ բարեկամն է», հաճախ է ասում ընկեր Բոյախչյանը: Այդ մասին լավ գիտեն երկրորդ դասարանի երեխաները, և հատկապես պիոներները: Նրանց մեծ մասը կապված է դպրոցի գրադարանի հետ, իսկ շատերը օգտվում են նաև Խնկո Ապոր անվան մանկական գրադարանից: Մարիկան, Վիոլետան, Սվետլանան, Սիլվան և մյուսներն արդեն շատ գրքեր են կարդացել:

Մոտենում է տարեվերջը: Երկրորդ դասարանի աղջիկները քննություններ չեն հանձնելու. բայց ընկեր Բոյախչյանը ստուգելու է նրանց գիտելիքները: Երեխաները պարապում են. պարապում են բոլորը: Նույնիսկ




Երևանի Տիմոշենկոյի անվան դպրոցի IV ա դասարանի մի խումբ աշակերտուհիներ պատրաստվում են քննություններին:

Արմինեն, որ գերազանցիկ է, պարապում է թվաբանությունից: Նա խնդիրներ վճռելիս մի փոքր դժվարանում է: Աշխատում է այդ ուղղությամբ:

Ետ մնացողներին օգնում են գերազանցիկները՝ Լուիզան, Աննան, Լիդան և մյուսները: Ընկերներին օգնում է նաև պիոներական օղակը: Չէ՞ որ նրանք խոսք են տվել ոչ մի երկտարեցի չունենալ:

— Ես համոզված եմ, որ նրանք իրենց խոսքը կկատարեն,— ասում է ընկեր Բոյախչյանը:

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# ՍԵՐԳՈՅԻ ԻՆՔՆԱԹԻՌԸ

Ս. ՕՐԲԵԼՅԱՆ

Նկ. Ան. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

Այդ օրվա պիոներական հավաքույթում անցկացվելիք զրույցի թեման հայտնի էր բոլորին։ Նախկին պարտիզան Խաչատուր քեռին պիտի պատմեր, թե ինչո՞ւ գյուղից ոչ հեռու գտնվող երկաթուղային կայարանի մոտի դաշտը կոչվում է «Ինքնաթիռի դաշտ»։ Նրանք արդեն պիոներական սենյակում էին, երբ կոլտնտեսության վարչության նախագահ Պատուրյանն ու Խաչատուր քեռին զրուցելով ներս մտան, սիրալիր բարևեցին հավաքույթի մասնակիցներին և նստեցին սեղանի շուրջը։ Ջոկատխորհրդի նախագահ Վարսիկը բաց արավ հավաքույթը և ձայն տվեց Խաչատուր քեռուն, որն իր զրույցն սկսեց այսպես.

— Երեխանե՛ր, սրանից երեսուներկու տարի առաջ՝ 1921 թվականի մարտին մի անմոռանալի դեպք է կատարվել մեր գյուղի մոտերքը։

Սովետական նոր կառավարությունը հազիվ ձեռնամուխ էր եղել քայքայված տնտեսության վերականգնմանը, հոգ էր տարվում սերմացու ձեռք բերելու, սովետական առաջին գարնանացան կատարելու համար։



Հենց այդ ժամանակ դաշնակները ավանտյուրա բարձրացրին, կրկին անգամ դժբախտ, բզկտված հայ ժողովրդին ենթարկեցին պատերազմի ծանր փորձությունների։ Դաշնակները խախտեցին մեր խաղաղ կյանքը։ Իմ հիշողության մեջ այդ օրերի դեպքերը՝ ոնց որ երեկ եղած լինեն։

Երևանի փողոցներում տեղի ունեցած կարճատև կռիվներից հետո, մենք, այսինքն Կարմիր Բանակի զորամասերը և սովետական հիմնարկների աշխատողները, ստիպված թողինք Երևանը ու նահանջեցինք Ղամարլուի ուղղությամբ։

Երևանն ընկավ հարբած մաուզերիստների ձեռքը. թշնամին Ղամարլու—Արարատի շրջանում մեզ շրջապատեց։

Այն հողակտորը, որի վրա գտնվում էինք մենք, վեց քառակուսի կիլոմետրի չափ էր։ Բայց մենք մեզ այդ փոքրիկ հողակտորի վրա ամուր էինք զգում, քանի որ նա սովետական էր, հարազատ... Թշնամին անընդհատ գրոհում էր մեր դիրքերի վրա։

Հրետանավոր Կոստյան «կոմունարկայով» սրբելով երեսը, խրամատներով կուզեկուզ գնում էր դեպի Արարատ կայարանը։

— Ի՞նչ է պատահել, Կոստյա՛,— շշնջաց սնայպեր Սարոն։

— Ինչ պիտի պատահի, հրետանու արկերը սպառվում են, թշնամին էլ՝ տե՞ս...

Ոչ միայն արկերը, այլև փամփուշտներն էին սպառվում։ Իսկ սննդամթերքի մասին խոսելն ավելորդ էր։ Հացի վերջին փշրանքները մի օր առաջ էր բաժանված հիվանդներին ու վիրավորներին։

Կոստյան անհետացավ և քիչ անց Արարատ կայարանից մեր «Ազատամարտ» զրահագնացքի հրետանավորները սկսեցին կրակ թափել թշնամու դիրքերի վրա։

— Ջա՛ն, Կոստյա՜,— ասում էին տղաները։

— Այդպիսի կրակին, իհարկե, արկերը չեն հերիքի,— ասաց կոմիսարը, գրպանից հանելով արծաթե ծխախոտատուփը, բայց հիշեց, որ մեջը ծխելու բան չկա, նորից գրպանը դրեց։

Թշնամին տեղյակ չէր, որ մեր զինամթերքի պաշարները սպառվում են, և մի քանի կիլոմետր նահանջեց դեպի Խորվիրաբ, դեպի Արաքսի ափը։ Դրանով մեր տերիտորիան մի փոքր լայնացավ։

Գիշերվա կեսին մեր կոմիսարը եկավ խրամատները և բարձր տրամադրությամբ հայտնեց.

— Հետաքրքիր լուր է ստացվել, ընկերնե՛ր։

— Ի՞նչ լուր, որտեղի՞ց,— ամեն կողմից հարցրին մարտիկները։

— Ընկեր Օրջոնիկիձեն Բաքվից ռադիոյով կայծակագիր է հաղորդել.

«Ինչ գնով ուզում է լինի պահել սովետական իշխանությունը՝ մինչև օգնության հասնելը»։

Ուրախությունից մարտիկների աչքերը փայլեցին, հարազատ Սերգոյի կայծակագիրը նրանց մեջ ամրապնդեց հաղթանակի հավատը։

Մի օր երեկոյան դեմ Կարմիր լեռների կատարներին իրարանցում նկատվեց։

— Ովքե՞ր են,— անհանգստանում էին մարտիկները։

— Ո՞վ գիտե...

— Չլինի՞ թշնամին մեզ այդ կողմից էլ է շրջապատել։

Դեռ ոչ մի եզրակացության չէինք եկել, երբ մեր խրամատների մոտ սպիտակ դրոշի նման մի բան ծածանվեց։

— Չկրակե՛ք,— ձայն տվեց մի պատանի։

Մի քանի րոպեից հետո խրամատները լցվեցին հայ և ադրբեջանցի մի խումբ պատանիներ։ Մինչ ես նրանց էի նայում, մեկը գրկեց ինձ։

— Խաշը բիրլա՞[1],— կանչեց ինձ գրկողը։ Դա հարևան ադրբեջանական գյուղացի Քերիմ Սուլթանովի տղան՝ Ասադն էր, լավաշ հացի մի մեծ կապոց ուսին։ Մարտիկների տրամադրությունը բարձրացավ։ Այդ միջոցին նոր, ուրախալի լուր ստացվեց.

— Օրջոնիկիձեն նոր կայծակագիր է տվել, վաղը դուք օգնություն կստանաք։

Հաջորդ օրը երկնքում հնդոց լսվեց։

— Ընկեր Սերգոյի ինքնաթի՛ռը,— իրար աչքալուսանք տալով գոչեցին մարտիկները։

Ինքնաթիռը Կարմիր լեռների վրա պտույտներ կատարելով՝ վայրէջքի տեղ էր որոնում։

Վերջապես նկատեց մեր ազդանշանը, մի քանի պտույտ գործեց Արարատ կայարանի վրա, թեքվեց ու իջավ դաշտում։ Ինքնաթիռի մեջ մի տոպրակ ոսկի կար, որով հաց



էինք գնելու Իրանում. կար և դեղորայք՝ վիրավոր բանակայինների համար։ Լենինն էր ուղարկել... Մենք շունչ առանք և սկսեցինք գրոհը։ Թշնամին տեսել էր, որ Կարմիր Բանակի զորամասերը ինքնաթիռով օգնություն են ստանում Մոսկվայից և չդիմանալով մեր գրոհներին, անկազմակերպ նահանջեց։

Մենք նորից բերկրալի լուր ստացանք։

— Երևանը գրավվա՛ծ է, Երևանը գրավված է Սերգո Օրջոնիկիձեի ուղարկած զորամասերի կողմից,— գոչում էր հեռախոսավարը։

Մարտիկների ոգևորությանը սահման չըկար, իսկ մեզ հետ դեպի Արարատ նահանջած մարդիկ ուրախությունից արտասվում էին։ Մեկն իր երեխան էր թողել Երևանում, մյուսը հիվանդ մորը, երրորդը՝ կնոջը։

Դաշնակները օղակի մեջ ընկան։ Քանաքեռից նրանց ճզմեցին մեզ օգնության եկած ռուսական զորքերը, Արարատից սեղմում էինք մենք։ Թշնամին մեծ զոհեր տալով փախավ-անցավ Արաքսի այն ափը։

Երևանում ես տեսա ընկեր Սերգոյին։

Ամբողջ Երևանը, շրջակա գյուղերի ազգաբնակչությունը ծաղկեփնջերով եկել էր դիմավորելու նրան՝ հայ ժողովրդի ազատարարներ՝ մեծ Լենինի և Ստալինի զինակցին։ Նա դուրս եկավ վագոնից կարմիր բանակայինի շինելը հագած, հնգաթև աստղը ճակատին և ասաց.

— Այսուհետև Հայաստանը ազատ է։ Կեցցե՛ Սովետական Հայաստանը...

Ես երբեք, երբեք չեմ մոռանա Սերգո Օրջոնիկիձեի բարի ու լուսավոր դեմքը։

Իսկ այն հողակտորը, որի վրա իջել էր ընկեր Օրջոնիկիձեի ինքնաթիռը, կոչվեց «Ինքնաթիռի դաշտ»։

1 Բարեկամ։

# ԽՈՍՈՒՄ Է ԴՊՐՈՑԻ ՌԱԴԻՈՀԱՆԳՈՒՅՑԸ





Զը՜նգ... հնչում է էլեկտրական զանգը և մի վայրկյանում դպրոցի լայն միջանցքները լցվում են աշակերտուհիներով։

Կարծում եք դա սովորական էլեկտրական զա՞նգ է, իհարկե՝ ո՛չ։ Դա ժամացույցն է ազդարարում դասի ավարտը։ Ոչ ոք չի միջամտում, ոչ ոք չի սեղմում էլեկտրական զանգի կոճակը։ Անցնում է դասի քառասունհինգ րոպեն և զանգը հնչում է։ Անցավ դասամիջոցը, ժամացույց-զանգը նորից է հընչում ավտոմատ կերպով և բոլորն անցնում են դասարանները։

Չկարծեք թե այդ ժամացույց-զանգը կարող է սխալվել։ Ամենևին։ Նա աշխատում է անվրեպ, և զանգը միշտ էլ ժամանակին է հնչում։

Այդպիսի ժամացույց-զանգ բոլոր դըպրոցներն էլ կարող են ունենալ։

Երևի հիմա մտածեցիք, թե նման ժամացույց-զանգեր վաճառում են խանութներում և կարելի է հեշտությամբ գնել։ Բանն էլ հենց այն է, որ նման ժամացույց-զանգեր չեն վաճառվում։ Դա իրենք աշակերտներն են պատրաստել։ Եթե չեք հավատում, հարցրեք Լենինականի Միկոյանի անվան № 10 իգական միջնակարգ դպրոցի աշակերտուհիներին։ Նրանք ոչ միայն ցույց կտան այդ ժամացույց-զանգը, այլև կբացատրեն, թե ինչպես են պատրաստել։

Դրա համար հարկավոր է վերցնել պատի սովորական ժամացույց և հատուկ բաժանումներ կատարել նրա սկավառակի վրա. բայց այնպիսի բաժանումներ, որոնք համապատասխանեն դասի և դասամիջոցի ժամանակին։ Այնուհետև, երբ րոպեն ցույց տվող սլաքը կկանգնի այդպիսի բաժանումներից որևէ մեկի վրա, էլեկտրական շղթայի միջոցով զանգը կհնչի։

Նույն դպրոցի աշակերտուհիների ջանքերով վերջերս դպրոցում պատրաստվեց ռադիոհանգույց։ Բավականին դժվարությունների հանդիպեցին նրանք, բայց համառությունը կատարեց իր գործը և աղջիկները հասան իրենց նպատակին։

Բոլորն աշխատում էին դասերից հետո։ Ահա Անիկ Ղազարյանը, Կիմա Պետրոսյանը, Ռայա Քյուրքչյանը, որոնք անցքեր են բաց անում պատերի մեջ, լարերն անցկացնելու համար։ Նրանց վարժ ձեռքերի մեջ գործիքները արագորեն շարժվում են։ Անցքերը բացված են և նրանք իրենց տեղը զիջում են մյուսներին՝ Լուսիկ Մարգարյանին, Օլգա Հովհաննիսյանին, Լիդա Սարգսյանին։ Վերջիններս լարերը ամրացնում են պատերին, իսկ երրորդ խումբն էլ պատրաստում է բարձրախոսների տեղերը։ Աշխատանքի բաժանումն օգնեց, որպեսզի գործն ավելի արագ ընթանա։

Այսպես համարյա ամեն օր դասերից հետո Լենինականի Միկոյանի անվան դպրոցի ներսում թխթխկում էին մուրճերը, խզզում սղոցներն ու խարտոցները։ Եվ կարճ ժամանակում ռադիոֆիկացվեց ամբողջ դպրոցը. դասասենյակներում և միջանցքներում դըրվեցին ռադիո բարձրախոսները։ Բայց ամենից դժվարը դեռ չէր արված։ Հարկավոր էր հավաքել հաղորդիչ ապարատը։ Իհարկե պատրաստ վիճակում այդ կարելի էր ձեռք բերել խանութներում, բայց դա հետաքրքիր չէր լինի։ Աշակերտուհիները որոշեցին սեփական ձեռքերով պատրաստել այն։ Ի՞նչ անենք, թե դժվար է։

Նրանց այդ գործում օգնում էր ֆիզիկայի դասատու ընկեր Նալչաջյանը։ Իսկ դիրեկտորն արդեն առանձնացրել էր մի փոքրիկ սենյակ, որտեղից պետք է տրվեին հաղորդումները։

Հաղորդող ապարատի գծագիրը կազմելուց հետո սկսվեց մի նոր աշխատանք։ Չէ՞ որ պատրաստելով հաղորդող ապարատ, աղջիկները միևնույն ժամանակ կրկնում էին ֆիզիկայից անցած դասը, խորանում այդ թեմայի մեջ։

Մի օր էլ, այդ օրը երբեք չեն մոռանա իններորդ և տասներորդ դասարանների աշա-

կերտուհիները, պատանի տեխնիկներն սկըսեցին փորձարկել ռադիոհանգույցը։ Հավաքվել էին բոլորը. ոչ ոք չէր ուզում տուն գնալ։ Եվ ինչպե՞ս գնալ, երբ պետք է երևար իրենց աշխատանքի արդյունքը։ Աղջիկներն իրար հարց էին տալիս.

— Իսկ եթե չաշխատի, ի՞նչ պետք է անենք։

— Ի՞նչ պետք է անենք,— զայրացած պատասխանում էր Մանիկը,— նորից պիտի չարչարվենք։

Վերջին միացումն արդեն ավարտված է։ Միացնում են էլեկտրականությունը։ Բոլորը շունչները մի ակընթարթ պահում են։ Նրանց հայացքներում կարելի է կարդալ հետևյալ հարցը.

— Կաշխատի, թե՞ ոչ։

Եվ երբ վառվում են հաղորդող ապարատի վրա գտնվող փոքրիկ լամպերը, բոլորն ազատ շունչ են քաշում։ Իսկ երբ ապարատից ձայներ են հնչում, աշակերտուհիները ուրախացած ողջունում են իրար։ Մանիկ Գրիգորյանը շրջում է ուղղիչ բռնակը. ապարատում ձայները դադարում են։ Նշանակում է ամեն ինչ կարգին է. այժմ կարելի է խոսել միկրոֆոնի մոտ և ձայնը կհնչի բոլոր միջանցքներում ու դասասենյակներում։ Բոլորը դուրս են գալիս սենյակից և խմբվում բարձրախոսների մոտ։ Հաղորդման սենյակում մնում են երկուսը։ Եվ հանկարծ հնչում է ծանոթ մի ձայն։

«Ուշադրությո՛ւն, ուշադրությո՛ւն։ Այսօր առաջին անգամ սկսում է գործել Լենինականի Միկոյանի անվան № 10 իգական լրիվ միջնակարգ դպրոցի ռադիոհանգույցը»...

Աղջիկների ուրախությանը չափ ու սահման չկա, նրանց դեմքերին փայլում է երջանկության ժպիտը։

Հաջորդ օրը առավոտյան, երբ դեռ ժամացույց-զանգը չէր հնչել, բոլորը դասասենյակներումն էին արդեն։ Հնչեց աշակերտ-դիկտորի ձայնը։

«Բարի լույս ձեզ, սիրելի ընկերնե՛ր։ Մինչև դասերի սկիզբը մնացել է հինգ րոպե։ Խոսում է դպրոցի-ռադիոհանգույցը։ Այսօրվանից սկսում ենք մեր ռադիոհաղորդումները»։ Եվ դիկտորը հաղորդեց նորություններ դպրոցի և պիոներական կազմակերպության մասին։

Աշակերտներն իմացան, թե այդ օրը առարկայական որ խմբակների պարապմունքներն են լինելու, որ ջոկատներն են հավաքույթ ունենալու և ինչ թեմաներով։ Իսկ երբ հնչեց ժամացույց-զանգի ձայնը, դիկտորն ազդարարեց.



Լենինականի Ա. Ի. Միկոյանի անվան դպրոցի մի խումբ պատանի ֆիզիկոսներ խմբակի պարապմունքի ժամանակ։
Ֆոտո՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ

«Ուշադրությո՛ւն, սկսվում են դասերը. սրանով վերջացնում ենք մեր առավոտյան հաղորդումը»։

Այս բոլորի մասին պատմեցին իրենք՝ աշակերտուհիները։ Նրանք պատմեցին նաև այն մասին, թե ինչեր են նախատեսնում պատրաստել։ Երբ նրանք խոսում են ու պատմում այդ բոլորի մասին, զգում ես, որ անպայման կհասնեն իրենց նպատակին, որովհետև ունեն հաստատակամություն, համառություն գործի մեջ, չեն ընկճվում, չեն հուսահատվում, երբ հանդիպում են դժվարությունների։ Եվ հաստատ համոզվում ես, որ նրանց խելացի, պայծառ հայացքները ուղղված են ապագային։

Ռ. ՂԱՍԱՐՅԱՆ




ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

Ձիգ լարերին, դաշտի վրա,
Նստոտել են ծիտ ու սարյակ,
Ու որսում են լուրերն ահա
Տոտիկներով իրենց բարակ:
Իսկ, դե՜, լուրեր՝ ինչքա՜ն ասես.
Այդ լարերի միջով անտես
Սլանում են գիշեր-ցերեկ,
Ծայրից մինչ ծայր, աշխարհով մեկ...

Մեկ էլ ահա մի ծիտ, թե՝ — Ծի՜վ...
Մի տե՜ս, մի տե՜ս, թե ի՜նչ պատիվ.
Արտաշատից հիմա, հենց նոր,
«Կայծակ» թռավ Աղավնաձոր,
Թե երբ կգան Ճիկոն, Ծիտոն,
Այդ օրն արեք թռչունի տոն...

— Ճի՛կ-ճի՛կ, ճի՛կ-ճի՛կ,— ճչաց մի ծիտ,—
Լսեք՝ ասեմ փոքր ու մեծիդ.
Տոտիս տակով անցավ մի լուր
Վարդաձորից Վարդաբլուր,
Թե՝ «Երամը կգա վաղը.
Պատրաստ է, չէ՞, նրանց թաղը...
Մեծ խմբով են թռչում ձեզ մոտ.
Տես՝ չկտրեն մի թև, մի ոտ»:

Հանկարծ մեկը այդ երամից
Թռավ վերև միանգամից.
— Քուրիկ Ծիվո՜, վա՜յ ինձ, վա՜յ ինձ,
Ի՜նչ լսեցի մի տղայից...
Ասաց՝ «Հենց որ ծտին տեսար,
Պարսատիկում դիր մեծ մի քար,
Խփիր նրան, մի՛ խնայիր.
Որին ճանկես՝ տուր սպանիր»:

Այս որ ասաց, մի ծիտ, թե՝ — Կա՛ց.
Իմ տոտիկն էլ վատ լուր որսաց.
Մի աշակերտ հեռախոսով
Իր ընկերոջն ասաց՝ — Այսօր
Երեք բուն եմ ես ավերել,
Ձվերն առել տուն եմ տարել...

— Ի՛հ, քեզանից պակաս չեմ ես.—
Պատասխանեց ընկերն այսպես:

Իրար անցավ ծտանց ցեղը.
Ո՞վ կնստեր հանգիստ տեղը:
Ծվծվացին, թռան վեր-վեր...
— Այդ չար տղան ո՞վ էր, ո՞վ էր...
— Վա՜յ կարճ խելքիդ, տղա՜,— ասաց
Պառավ սարյակն աշխարհ տեսած.—
Չի հասկանում... Մեզ սպանի՝
Իրենց այգի՛ն վնաս կանի.
Ո՛չ տանձենին, ո՛չ հաստ ուռին
Չեն դիմանա էլ թրթուրին...
— Բոռ ու բզեզ, ճանճ ու մոծակ,
Դաշտում լինի, թե ծածկի տակ,
Հանգիստ չեն տա սրան, նրան
Թեկուզ զրահ քաշի վրան:

Աղմկեցին ու լռեցին:
Մեկ էլ հանկարծ որոշեցին.
— Թռչենք գնա՛նք, էլ ի՞նչ հանգիստ.
Գտնենք դրանց՝ պատժենք շատ խիստ:
— Իմաց տանք շուտ լավ Օնիկին,
Բներ շինող մեր Զոնիկին,
Ե՛վ Արամին, և՛ Քյարամին,
Ե՛վ Ջանիկին, և՛ Մանիկին...
— Թող բոլորը մեզ պաշտպանեն,
Չարիկներին հեռու տանեն:
— Խփեն թափին վնասատու,
Լինի աղվես, լինի կատու...

Որոշեցին ծտավարի
Ու թռ՜ռ դեպի գործը բարի:

Իսկ մե՞նք. պարզ է՝ պետք է օգնենք
Թռչուններին մեր բարեկամ.
Բներ շինենք, պատսպարենք.
Թող նրանք գան երամ-երամ
Ու կտորեն մորեխ, բզեզ
Եվ օգնեն մեզ ընկերոջ պես:

# ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆՈՒՄ







*Վերջերս մեր ռեսպուբլիկայի և մայրաքաղաքի բազմաթիվ պիոներներ ու աշակերտներ դիտեցին «Մոսկվա» կինո-թատրոնի ֆոյեում բացված ուսումնարանի ցուցահանդեսը, որտեղ ցուցադրըված էին 200-ից ավելի աշխատանքներ: Այդ աշխատանքներում բազմակողմանիորեն արտահայտված է մեր սոցիալիստական իրականությունը, աշխատավորության ստեղծագործ աշխատանքը, երեխաների երջանիկ կյանքը:*

*Ցուցահանդեսում իրենց թարմությամբ աչքի են ընկնում Լենինի և Ստալինի ռևոլյուցիոն անցյալը պատկերող Ռ. Գարգալոյանի և Գ. Սմբատյանի աշխատանքները, Ս. Բոյաջյանի «Մանկապարտեզում» և շատ ուրիշ աշխատանքներ, որոնք ցույց են տալիս Գեղարվեստական ուսումնարանի սաների հետաքրքրությունը դեպի ժամանակակից թեմատիկան:*

*Գծանկարի դասատու Գ. ԱՂԱՍՅԱՆ*

ՆԿԱՐՆԵՐՈՒՄ՝ Գեղարվեստական ուսումնարանի շրջանավարտներ Խ. Մուրադյանի «Կոմունիզմի մեծ կառուցումները» գեղանկարը, Ս. Նազարյանի «Չկնորսը» և Հ. Հակոբյանի «Թիթեռ բռնող աղջիկը» քանդակները. ֆոտո-ռեպրոդուկցիաները Ք. Սևանցյանի:

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍ

Երևանի Պիոներների պալատի ընդարձակ դահլիճներից մեկում բացվեց պիոներների և դպրոցականների պատրաստած ինքնաշեն գործիքների ցուցահանդեսը: Հատուկ պատվանդանների և սեղանների վրա խնամքով դասավորված են երեք հարյուր յոթանասունից ավելի ինքնաշեն աշխատանքներ: Ցուցահանդեսում աչքի է ընկնում Երևանի Կռիլովի անվան դպրոցը, որը ներկայացրել է յոթանասունից ավելի ինքնաշեն աշխատանք:

Այստեղ ցուցադրված է մի ռադիոհանգույց, որը պատրաստել են Նուբար Փափազյանը և Պողոս Պողոսյանը: Դրանով պիոներներն իրենց դպրոցում ռադիոհաղորդումներ են կազմակերպում: Փոքրիկ տախտակի վրա տեսնում ենք Կոմունիզմի մեծ կառուցումների մակետը: Տախտակի մի անկյունում տասնչորս էլեկտրական կոճակ կա: Հոսանքը միացընում ենք կոճակներից մեկին և ահա վառվող լամպիկները քարտեզի վրա ցույց են տալիս արդեն կառուցված և կառուցվող ջրանցքները: Հոսանքը միացընում ենք մի ուրիշ կոճակի. այս անգամ էլ լամպիկները ցույց են տալիս հիդրոէլեկտրակայանների վայրերը, երրորդ կոճակի լույսերը՝ այն մեքենաշինական գործարանները, որոնք մեքենաներ են մատակարարում նորակառույցներին: Ամեն մի լամպիկի օգնությամբ կարելի է տեսնել մատակարարող արդյունաբերության մի ճյուղ: Այս մանրակրկիտ աշխատանքը կատարել է աշակերտ Գեղամ Մաղանյանը:

Ցուցահանդեսում մի ամբողջ շարք զբաղեցնում են Լենինականի դպրոցականները: Ինչե՞ր ասես, որ նրանք չեն պատրաստել՝ ռեոստատներ, վոլտյան ա-

ղեղներ, լույսի անդրադարձման օրենքն ստուգելու գործիք և ուրիշ շատ այլ սարքեր: Հետաքրքիր է Միկոյանի անվան դպրոցի աշակերտուհի Էվելինա Ամիրխանյանի պատրաստած ֆոտոմետրը: Այս գործիքի օգնությամբ, համեմատության եղանակով, կարելի է չափել լույսի ուժը: Վարպետորեն է կառուցված հեռագրական փոքրիկ ապարատը, որի հեղինակն է Լենինականի Մայակովսկու անվան դպրոցի աշակերտ Աշիկ Կարախանյանը:

Ուշագրավ են պատանի տեխնիկների կենտրոնական կայանի բաժնում ցուցադրված գեղեցիկ և նուրբ իրերը: Ահա «Հմուտ ձեռքեր» խմբակի անդամների պատրաստած զամբյուղները, ստվարաթղթից շինված շախմատի տախտակը, ֆիգուրները և ուրիշ շա՜տ ինքնաշեններ: Ահա և Յուրիկ Ստեփանյանի պատրաստած տրամվայը իր վագոնի հետ միասին: Սեղմում ենք էլեկտրական հոսանքի կոճակը և տրամվայը շարժվում է շրջանաձև ռելսերի վրայով:

Տեխնիկական կայանի երեխաները պատրաստել են նաև աերոդինամոմետր: Այս գործիքով որոշվում է պրոպելերի օդային ձգողական ուժը: Բազմակողմանի է պատանի տեխնիկների հետաքրքրությունը. նրանք պատրաստել են մի գործող ինկուբատոր, որտեղ կտեղավորվի մի քանի տասնյակ ձու:

Շատ ինքնաշեններ են ցուցադրել Պիոներների պալատի խմբակների անդամները: Ահա մի բու, որ անընդհատ թարթում է իր աչքերը: Դա կատարվում է երեխաների պատրաստած ջերմային ռելեյի միջոցով: Ահա մի փարոս, որի լույսը նույնպես ինքնիրեն անընդհատ վառվում ու հանգչում է: Մենք պտտում ենք հաստատուն հոսանք առաջացնող գեներատորի բռնակը: Գեներատորի խարիսխի պտույտների շնորհիվ ցանցում առաջացած հոսանքից վառվում են երեք լամպ...

Հայկական ՍՍՌ Լուսավորության մինիստրության և ՀԼԿԵՄ Կենտկոմի հանձնաժողովը բարձր գնահատեց ցուցահանդեսի էքսպոնատները և որոշեց այդ ինքնաշենների հեղինակներից տասնչորսին պարգևատրել առաջին կարգի, քսան հոգու երկրորդ կարգի և երեսուն հոգու երրորդ կարգի մրցանակներով և ՀԼԿԵՄ Կենտկոմի գովասանագրերով: Պարգևատրվածների շարքում են՝ Գեղամ Մաղանյանը, Յուրիկ Ստեփանյանը, Հենրիկ Տելումյանը և ուրիշները:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը նկ. ԳՐ. ԱՂԱՍՅԱՆԻ




*Խմբագիր՝* ՍԵՎՈՒՆՑ Գ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՄԻՐՅԱՆ Մ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹԵՎԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՇԱԽՈՒԼՅԱՆ Մ., ՏԱԼՅԱՆ Վ.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 01854. Պատվեր 246, տիրաժ 5000, Տպագրական 2 1/4 մամուլ: Ստորագրված է տպագրության 8.IV. 1953 թ.*

*Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65, 1953 թ.*




## «ԼՈՒՍ՛ՆԻ ՄԱՐԴԸ»

Վաթսունհինգ տարի առաջ, 1888 թվականի ապրիլի 14-ին մեռավ ռուս մեծ ճանապարհորդ Նիկոլայ Նիկոլայևիչ Միկլուխո-Մակլայը, որը անցյալ դարի վերջերին հռչակվեց իր կատարած ճանապարհորդություններով և հատկապես Նոր Գվինեա կղզու պապուասների կյանքի ուսումնասիրությամբ: Այդտեղի բնիկները երբեք սպիտակ մարդ չէին տեսել, դրա համար էլ Մակլային անվանեցին «լուսնի մարդ»:

Մակլայն ամենից առաջ մտածում էր ծանոթանալ բնիկների հետ: Այդ բանը նրան հաջողվեց, որովհետև նա համարձակ էր, համբերա-



տար և մեծ մարդասեր: Երբ պապուասները համոզվեցին, որ Մակլայը բարի և անվնաս մարդ է, բարեկամացան նրա հետ ու շատ սիրեցին «լուսնի մարդուն»: Մակլայն ուսումնասիրեց պապուասների կյանքը և շատ արժեքավոր տեղեկություններ բերեց: Նա հերքեց բոլոր ոչ գիտական «տեսությունները» «բարձր» ու «ցածր» ժողովուրդների մասին և պապուասների վրա նայեց որպես հավասար մարդկանց: Պապուասները լավ հասկացան այդ, և Մակլայը նրանց համար դարձավ անկեղծ բարեկամ: Բնիկները իրար հետ հաճախ կռվի էին բռնվում, բայց երբ երևում էր Մակլայը, նրանք լսում էին նրա խորհուրդները և հաշտվում էին: Հանձինս Մակլայի պապուասների մոտ «ռուս» անվան տակ հասկացվում էր ամենասիրելի մարդը: Պատահական չէ, որ երբ Մակլայից հետո այնտեղ գնաց եվրոպական մի այլ էքսպեդիցիա, որի անդամները նրանց ներկայացան իբրև Մակլայի բարեկամներ, պապուասները ուրախությունից փաթաթվում էին նրանց և ասում էին «առլի Մակլա» (լավ Մակլայ):

Մակլայը թողել է գրական մեծ ժառանգություն, որը մեր օրերում համարյա ամբողջապես հրատարակվել է: Սովետական ժողովուրդը միշտ էլ հիշում է իր մեծ ճանապարհորդին և գիտնականին:

## ՄԻԽԱԻԼ ԻԼԼԱՐԻՈ՛ՆՈՎԻՉ ԿՈՒՏՈՒԶՈՎ

(1745—1813)

Լրացավ ռուս մեծ զորավար գեներալ-ֆելդմարշալ Կուտուզովի մահվան 140 տարին: Կուտուզովը մեծ Սուվորովի տաղանդավոր աշակերտն էր և զինակիցը: Նա իր սխրագործություններով հայտնի դարձավ ռուս-թյուրքական պատերազմի ժամանակ: Նրա զորավարական տաղանդը դրսևորվեց հատկապես 1812 թվականի Հայրենական պատերազմի օրերին: Բորոդինոյի պատմական ճակատամարտում Կուտուզովը փայլուն հաղթանակ տարավ Նապոլեոնի



բանակի դեմ: Դրանից հետո ռուս ժողովրդի մեջ ամրացավ օտարերկրյա զավթիչներին ջախջախելու հնարավորության հավատը: Նապոլեոնի բանակը փախավ Սմոլենսկի ճանապարհով, այնտեղով, որտեղով եկել էր: Ռուսական բանակը հետապնդում էր գլուխը կորցրած թշնամուն. ատելի զավթիչներին հարվածում էին նաև պարտիզանները: Մեծ զորավարը և նրա պանծալի բանակը փրկեցին Ռուսաստանը օտարերկրյա զավթիչներից:

Մեր երկրի ժողովուրդները սիրով են հիշում մեծ զորավարին և սրբությամբ են պահում նրա անվան հետ կապված հուշարձանները: Այդպիսի վայրերից մեկն է «Կուտուզովյան խրճիթը», որտեղ կայացել է պատմական ռազմական խորհուրդը: Դա գտնվելիս է եղել Ֆիլի գյուղում, որն այն ժամանակ մոտ երկու կիլոմետր հեռու էր Մոսկվայից:

## ՄԵԾ ԼՈՒՍԱՎՈՐԻՉԸ

(1805—1848)

Մեծ գրող, լուսավորիչ, դեմոկրատ և հայ նոր գրականության հիմնադիր Խաչատուր Աբովյանը ծնվել է 1805 թվականին Քանաքեռ գյուղում: Նախնական կրթությունը ստացել է էջմիածնում, ապա շարունակել է Թիֆլիսում և Դորպատի համալսարանում: Աբովյանը գրել է վեպեր, առակներ և այլ երկեր: Դրանցից ամենաարժեքավորը «Վերք Հայաստանի» վեպն է:

Այդ վեպում Աբովյանը նկարագրել է Պարսկաստանի լծի տակ տանջվող հայ ժողովրդի ծանր վիճակը և Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին: Այդ միացումը հայ ժողովրդի համար ունեցավ խոշոր նշանակություն: Աբովյանը պատկերել է ռուս և հայ ժողովրդի ջերմ բարեկամությունը: «Ռուսաց



քաջ հոգին էր, որ մեզ ազատեց» ասում է Աբովյանը և ավելացնում, որ ռուս և հայ ժողովրդի ջերմ սերը կմնա հավիտյան: Կռվելով ժողովրդին անհասկանալի գրաբար լեզվի գործածության դեմ, նա իր գործերի մեծ մասը գրեց աշխարհաբար լեզվով: Գրել ժողովրդին հասկանալի լեզվով և պաշտպանել ժողովրդի շահերը, այս է եղել Աբովյանի նպատակը: Մեծ հայրենասերը քարոզում էր ժողովուրդների բարեկամություն և համերաշխություն: Աբովյանը նաև հայ նոր մանկավարժության հիմնադիրն է, հայ առաջին մանկագիրը:

ԳԻՆԸ 2 Ռ.

# ՀՄՈՒՏ ՁԵՌՔԵՐԻ ԳՈՐԾԸ



Պատանի տեխնիկների Կենտրոնական կայանի ինքնաշեն սարքերի մասը: ՅՈՒ. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ պատրաստած էլեկտրական տրամվայը:

